*Պրոլետարնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք*

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 20 (27)

ՀԿ(բ)Կ ԿԿ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ «Խ. ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ • 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




*Խմբագիր* Մարտիրոսյան, *քարտուղար* Դոնոյան, *տեխն. խմբ.* Ս. Խաչատրյան, *սրբագրիչ* Վ. Զիդիչյան

*Գլավլիտի լիազոր* Շ.—1258
*Պատվեր* № 211, *տիրաժ* 12.200
*Հանձնվել է արտադրության* 31/X 1937 *թ.*
*Ստորագրվել է տպագրելու* 2/XI 1937 *թ.*

Հայկուսհրատի տպարան, Յերեվան,


### ՔՍԱՆ ՏԱՐԻ ՍՐԱՆԻՑ ԱՌԱՋ

# 1917 ԹՎԱԿԱՆԻ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ԶԻՆՎԱԾ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ ՅԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ ԽՍՀՄ-ՈՒՄ


Ա. Ս Ե Ր Ե Դ Ա


*Հոկտեմբերյան զինված ապստամբությունը նախապատրաստեց ու անցկացրեց Լենինի–Ստալինի հերոսական կուսակցությունը, վորը Ռուսաստանի պրոլետարիատին ու չքավոր գյուղացիությանը գրոհի տարավ կապիտալիզմի դեմ՝ հանուն պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակի:*

*«Մենք իրավունք ունենք հպարտանալու և մեզ յերջանիկ համարելու այն բանի*

համար, վոր մեզ առաջինը վիճակվեց յերկրագնդի մեկ անկյունում տապալել այն վայրի գազանին, կապիտալիզմը, վորը հողը վողողել է արյամբ, մարդկությանը հասցրել է սովի ու վայրենացման և վորը կկործանվի անխուսափելիորեն ու շուտով, վորքան էլ հրեշավոր կերպով գազանային լինեն նրա հոգևարքի կատաղության արտահայտությունները»[1]:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխությունը ԽՍՀՄ-ում հաղթանակեց, վորովհետև Լենինի-Ստալինի բոլշևիկյան կուսակցությունը բոլոր թշնամիների դեմ անհաշտ պայքարում բանվոր դասակարգին անշեղորեն տանում եր դեպի իշխանության նվաճումը, դեպի սոցիալիստական հեղափոխության հաղթանակը:

Բանվոր դասակարգը սերտորեն համախմբվելով իր կուսակցության շուրջը՝ Լենինի ու Ստալինի ղեկավարությամբ հաղթանակեց 1917 թվականի հոկտեմբերին,

1) Վ. Ի. ԼԵՆԻՆ, Ցերկեր, հատ. XXIII, եջ 109։



մեր յերկրում հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա՝ խորհուրդների ձևով:

* * *

Բոլշևիկյան կուսակցության ապրիլյան (1917 թվականի) կոնֆերանսը կուսակցության պայքարը ուղղեց բուրժուական հեղափոխությունը սոցիալիստականի վերածելու համար: Մեր կուսակցության՝ 1917 թվականի ոգոստոսին տեղի ունեցած վեցերորդ պատմական համագումարը, վորն անցկացվեց ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ և վոգեշնչվում եր Վ. Ի. Լենինի կողմից, կուսակցությանն ուղղեց դեպի զինված ապստամբություն:

Հեղափոխական հուժկու վերելքը յերկրում, վոր կանխատեսել եր ընկեր Ստալինը բոլշևիկյան կուսակցության 6-րդ համագումարում, ռեալ փաստ դարձավ Կոռնիլովի հակահեղափոխական դավադրության ջախջախումից հետո: Կոռնիլովականության փորձի վրա աշխատավոր մասսաները գիտակցեցին բուրժուազիայի և եսերա-մեն-

շևիկյան համաձայնողականների դեմ ամենաանողոք պայքար մղելու անհրաժեշտությունը՝ հանուն խորհուրդների իշխանության։ Աշխատավորության ամենալայն մասսաները կանգնում եյին Լենինի–Ստալինի կուսակցության հեղափոխական դրոշի տակ, համախմբվում եյին սոցիալիստական հեղափոխության համար պայքարելու բոլշևիկյան մարտական լոզունգների շուրջը։

Մենշևիկների ու եսերների դավաճանական կուսակցությունների ազդեցությունը մասսաների վրա արագորեն ընկնում եր։ Ամբողջ յերկրում տարածվեց գործադուլների հուժկու ալիքը, կապիտալի դեմ պայքարի յելան պրոլետարիատի բազմամիլիոն մասսաները։ Խորհուրդները դառնում եյին բոլշևիկյան։ Որակարգի մեջ դրվեց կուսակցության գլխավոր խնդիրը—հաղթական զինված ապստամբության նախապատրաստումը՝ հանուն պրոլետարիատի դիկտատուրայի իրականացման։

Բոլշևիկների կուսակցությունը հետևելով բոլշևիզմի հիմնական սկզբունքին—միշտ



լինել մասսաների հետ և մասսաների գլուխ անցած, ղեկավարում եր պրոլետարիատի ամբողջ հերոսական դասակարգային պայքարը, տնտեսական պայքարը կապակցելով քաղաքականի հետ, բանվոր դասակարգի մասնակի պահանջները՝ վերջնական պայքարի հետ՝ հանուն բանվոր դասակարգի կողմից իշխանության նվաճման, հանուն սոցիալիզմի։

Բանվորական շարժումը, վորը ղեկավարում եր Լենինի–Ստալինի կուսակցությունը, ընդունում եր քաղաքական իշխանության նվաճման համար բացահայտ հեղափոխական պայքարի բնույթ ու ձև։

Հեղափոխության նոր վերելքի առավել պայծառ հատկանիշը հանդիսացավ բանվորական ու զինվորական պատգամավորների խորհուրդների բոլշևիկացման արագ պրոցեսը։

Ոգոստոսի 31-ին ղեկավարությունը Պետրոգրադի խորհրդում անցավ բոլշևիկների ձեռքը։ Սեպտեմբերի սկզբներին Մոսկվայի խորհուրդը, վորը նվաճել եյին բոլ-

շևիկները, առաջին անգամ բոլշևիկյան բանաձև ընդունեց ընթացիկ մոմենտի վերաբերյալ, որի մեջ կոչ էր անում մասսաներին՝ համախմբվել բանվորական ու զինվորական պատգամավորների խորհուրդների շուրջը։ Սարատովում թարմացված խորհրդի կազմում կային 300 բոլշևիկ, 90 էսէր և 53 մենշևիկ։

Յերկրի բոլոր ծայրերից գալիս էին բանվորների, զինվորների ու աշխատավոր գյուղացիների պահանջները՝ իշխանությունը հանձնելու խորհուրդներին. «Յուրաքանչյուր ժամ նորանոր հաղթանակներ էր բերում բոլշևիկյան կուսակցությանը։ Հենց միայն սեպտեմբերի 1-ի օրվա ընթացքում խորհուրդների Համառուսական կենտրոնական գործադիր կոմիտեն 126 պրովինցիալ խորհուրդներից պահանջ ստացավ իշխանությունը վերցնելու իր ձեռքը»[2])։

«Հեղափոխությունը կկործանվի,—հայ-

2) «ԽՍՀՄ քաղաքացիական պատերազմի պատմությունը», հատ. 1-ին, էջ 400, ՈԳԻԶ։



տարարում էին իրենց բանաձևի մեջ Պետրոգրադի Ալեքսանդրովյան գործարանի բանվորները,—յեթե իշխանությունը չվերցնեն բանվորները, զինվորներն ու գյուղացիները՝ հանձին խորհուրդների։ Ուստի, խորհուրդների առաջիկա համագումարից մենք պահանջում ենք գլխավորել խորհուրդների իշխանությունը։

Գիտակցելով այն բանը, որ հեղափոխությունը սարսափելի օրեր է ապրում, մենք հայտարարում ենք — իշխանության համար մղվող պայքարում, հեղափոխության հաղթանակի համար մղվող պայքարում խորհուրդները կարող են հույս դնել մեր անպայման ու վճռական աջակցության վրա»[3])։

Ահա բանվոր դասակարգի հսկայական մեծամասնության ընդհանուր տրամադրությունը, որը սեփական փորձով համոզվել էր Կերենսկու բուրժուական կառավարության տապալման համար ամենաանողոք

3) «ԽՍՀՄ քաղաքացիական պատերազմի պատմությունը», հատ. I, էջ 400—401։

պայքար մղելու անհրաժեշտության մեջ: Պրոլետարիատը համախմբվում էր բոլշևիկների հեղափոխական դրոշի տակ:

Բոլշևիկների կուսակցությունը մերկացնելով և մեկուսացնելով էսէրներին ու մենշևիկներին, իր ձեռքն էր վերցնում խորհուրդների ղեկավարությունն ամբողջ յերկրում:

«Ամբողջ իշխանությունը խորհուրդներին» լոզունգը նորից հերթի դրվեց,—գրում էր ընկեր Ստալինը:— Բայց այժմ այս լոզունգն արդեն այն չէր նշանակում, ինչ առաջին ստադիայում: Նրա բովանդակությունն արմատապես փոխվեց: Այժմ այս լոզունգը նշանակում էր կապերի լիակատար խզում իմպերիալիզմից և իշխանության անցումը բոլշևիկներին, վորովհետև խորհուրդներն իրենց մեծամասնությամբ արդեն բոլշևիկյան էյին: Այժմ այս լոզունգը նշանակում էր հեղափոխության ուղղակի անցում պրոլետարիատի դիկտատուրային՝ ապստամ-



բության միջոցով: Դեռ ավելին, այժմ այդ լոզունգը նշանակում էր պրոլետարիատի դիկտատուրայի կազմակերպում և պետական ձևավորում»[4]):

Բանվոր դասակարգի հետևից հեղափոխական պայքարի մեջ մտան նաև աշխատավոր գյուղացիության լայն մասսաները, վորոնք կորցնում էյին հողն ստանալու ամեն մի հույս, քանի դեռ իշխանության գլուխ մնում էր կալվածատերերի ու բուրժուազիայի կառավարությունը: Գյուղացիությունն արագորեն կորցնում էր հավատը դեպի էսէրները, գյուղացիական շահերի այդ դավաճանները, վորոնք ամեն կերպ փորձում էյին կալվածատիրական հողատիրությունը փրկել կործանումից: Գյուղացիությունը գնալով ավելի ու ավելի յեր համոզվում, վոր միայն բոլշևիկների կուսակցությունը նրան կազատագրի կալվածատիրական-կուլակային ստրկությունից,

[4]) ՍՏԱԼԻՆ—Լենինիզմի հարցերը, եջ 94, 10 րդ հրատար. 1937 թ.,

կտա հաշտություն, հող և ազատություն։

Բոլշևիկների կուսակցության Հյուսիս-արևմտյան մարզային կոմիտեի օրգան «Բուրեվեստնիկ» թերթում հրապարակվեց մի չքավոր գյուղացու կոչը, հետևյալ բովանդակությամբ. «Ընկե՛ր գյուղացիներ. միաձուլվենք բոլշևիկ ընկերների հետ, միանանք նրանց մեծ, համերաշխ ընտանիքին, միանանք այն կուսակցությանը, որը մեզ երբեք չի դավաճանի և չի խաբի... Գնանք բոլշևիկների կուսակցության հետևից, աջակցենք այդ ընկերներին և նրանց հետ միասին գոչենք՝ «Ամբողջ իշխանությունը Բանվորական, Զինվորական ու Գյուղացիական Պատգամավորների Խորհուրդներին»[5])։

Գյուղացիական բուռն շարժումն ընդգրկել էր ցարական Ռուսաստանի համարյա բոլոր նահանգները. գյուղացիները կալվածատերերին դուրս էին քշում նրանց ազնվական տաք բներից, գրավելով կալվածատիրական հողերը։ Հունիսին յեղել է

---

5) «Բուրեվեստնիկ» № 15, 25-հոկտեմբերի, 1917 թ.։



կալվածատիրական հողեր գրավելու 112 դեպք, հուլիսին՝ 387, օգոստոսին՝ 440 և սեպտեմբերին 958 դեպք։

Գյուղացիների հեղափոխական շարժումը զարգանում էր իշխանությունը խորհուրդների ձեռքը հանձնելու, կալվածատիրական հողատիրությունը կոնֆիսկացիայի յենթարկելու, հաշտության համար պայքարելու բոլշևիկյան լոզունգով։

Բուրժուազիայի ժամանակավոր կառավարությունն եսերների ու մենշևիկների հավանությամբ փորձում էր հրով ու սրով վոչնչացնել գյուղացիների հեղափոխական շարժումը, ապստամբության շրջաններն ուղարկելով պատժիչ արշավախմբեր։

Կերենսկու կառավարությունը կազմեց հակահեղափոխական մի պլան—բանակի պարենավորումը բարելավելու պատրվակով նախատեսվում էր ամբողջ հեծելազորը ռազմաճակատից ուղարկել գյուղացիական ապստամբությունների դեմ պայքարելու համար։ Սակայն այդ պլանը չհաջողվեց իրականացնել, քանի որ ռազմաճակատն ին-

քը ներգրավվել եր հեղափոխական պայքարի մեջ:

Գյուղ ուղարկվող պատժիչ արշավախմբերը ոչ միայն չկոտրեցին գյուղացիների դիմադրությունը, այլ ե՛վ ավելի ուժեղացրին գյուղացիների սարսափելի ատելությունը դեպի կալվածատերերն ու կառավարությունը, ուժեղացրին գյուղացիական մասսաների պատրաստակամությունը՝ մինչև վերջ պայքարելու իրենց կեղեքողների դեմ:

Բուռն հորձանքով հեղափոխական պայքարի մեջ մտան բանակն ու նավատորմիղը: Գնալով ավելի ու ավելի ուժգին եր ծավալվում բանակի բոլշևիկացման պրոցեսը և զինվորական մասսաների անցումը բոլշևիկների կողմը: Կապիտալի շահերի համար մղվող յերեքամյա արյունալի սպանդում տանջված զինվորական մասսաների մեջ կուտակվել եր դասակարգային վիթխարի ատելություն նրանց նկատմամբ, ովքեր իրենց ստիպում եյին շարունակել այդ պատերազմը: Զինվորները չեյին վստահում հրամա-



նատարական կազմին. դիվիզիաներն ու գնդերը հրաժարվում եյին շարունակել պատերազմը: Բանակը քայքայվում եր, դրանով իսկ վկայելով յերկրում բուրժուա-կալվածատիրական ամբողջ կարգի խորտակման մասին:

Բացառիկ դժվարին իրադրության մեջ, կեղծիքի, զրպարտության և բուրժուազիայի, մենշևիկների ու եսերների կողմից հետապնդման պայմաններում բոլշևիկները հսկայական քաղաքական աշխատանք եյին ծավալում բանակում, ռազմաճակատ ուղարկելով ագիտատորներ, պրոպագանդիստներ, բոլշևիկյան գրականություն, թերթեր և այլն: Լենինի և Ստալինի պայծառ ու հասկանալի հոդվածներն ու ճառերը հսկայական տպավորություն եյին գործում զինվորների վրա, վարակելով նրանց սոցիալիզմի գործի համար պայքարելու կրակոտ կրքով: Բանակում և նավատորմիղում արագորեն աճում եյին բոլշևիկյան կազմակերպությունները: Զինվորական մասսան ազատագրվում եր մենշևիկների ու

եսերների ազդեցությունից: Որեցոր աճում էր Լենին—Ստալինի կուսակցության հեղինակությունը: Գնդային, վաշտային և այլ կոմիտեներն անցնում էին բոլշևիկների ձեռքը:

Ռազմաճակատից լայն հորձանքով գալիս էին զինվորական մասսաների պահանջները՝ իշխանությունը խորհուրդների ձեռքն անցնելու մասին: Բալթիական նավատորմիղի նավաստիները, վորոնց մեջ բոլշևիկների ազդեցությունը բացառիկ կերպով մեծ էր, Հոկտեմբերի սկզբներին առաջինը դիմեցին բոլոր յերկրների ճընշվածներին, կոչ անելով անհաշտ պայքարի պատրաստվել հանուն սոցիալիզմի:

Բալթիական նավաստիների կոչին միացրին իրենց ձայնը Սևծովյան նավատորմիղի նավաստիները:

Բանակի և նավատորմիղի մեծ մասը պատրաստ էր զենքը ձեռքին դուրս գալու հանուն բուրժուական կարգերի տապալման, հանուն խորհուրդների իշխանության հաստատման:



Ազգային մարզերում գնալով հաճախակի էին դառնում ընդհարումները ժամանակավոր կառավարության կոմիսարների և ազգային ինքնորոշում պահանջող տեղական կազմակերպությունների միջև: Ժամանակավոր կառավարությունը դաժանորեն դատաստան էր տեսնում ազգային ծայրամասերի՝ պետական ինքնուրույնության ամեն մի ձգտման հետ:

Ճնշված ազգությունների բանվորների ու գյուղացիների դժգոհությունը գնալով աճում էր: Նրանք ավելի ու ավելի հաստատակամորեն էին իրենց ազգային կազմակերպություններից պահանջում կիրառել վճռական քաղաքականություն՝ դադարեցնել պատերազմը, կոնֆիսկացիայի յենթարկել կալվածատիրական հողերը և վերացնել ազգային անհավասարությունը:

Այսպես էին մեկ միասնական, հուժկու հեղափոխական հորձանքի վերածվում բանվորական հեղափոխությունը, գյուղացիական ապստամբությունները, հեղափո-

խական շարժումը բանակում ու նավատորմիղում և ճնշված ազգությունների աշխատավորների ազգային-ազատագրական պայքարը: Սրա մեջ եր Հաղթական Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության մեծ հզորությունը:

Զինված բուրժուազիայի ու նրա ժամանակավոր կառավարության հետապընդումներին, հակառակ մենշևիկների ու եսերների դավաճանությանը, հեղափոխությունն առաջ եր գնում:

«Հեղափոխությունը,—գրում եր ընկեր Ստալինը,—առաջ է գնում: Գնդակոծված՝ հուլիսյան օրերին և «թաղված» Մոսկվայի խորհրդակցության կողմից, նա նորից գըլուխ է բարձրացնում, ջարդ ու փշուր անելով հին պատնեշները, ստեղծելով նոր իշխանություն: Հակահեղափոխության խրամատների առաջին գիծը գրավված է: Կոռնիլովի հետևից նահանջում է Կալեդինը: Պայքարի բովի մեջ կենդանություն են ստանում կարծեք թե մեռած Խորհուրդները: Նրանք նորից կանգ-



նում են ղեկի մոտ, առաջնորդելով հեղափոխական մասսաներին:

Ամբողջ իշխանությունը Խորհուրդներին—ահա նոր շարժման լոզունգը» [6]:

Բայց չեր ննջում նաև հակահեղափոխությունը: Նա շտապ կարգով մոբիլիզացիայի յեր յենթարկում իր մարտական ուժերը, աճող հեղափոխական ալիքը ջախջախելու համար:

Հակահեղափոխության գործակալները, մենշևիկներն ու եսերները, 1917 թվականի սեպտեմբերի 14-ին կազմակերպեցին Դեմոկրատական խորհրդակցություն, վորի նըպատակն եր ջախջախել աճող պրոլետարական հեղափոխությունը: Մենշևիկներն ու եսերները ձգտում եյին աշխատավոր մասսաներին հեռու պահել Խորհուրդների իշխանության համար մղվող անմիջական հեղափոխական պայքարից: Մանևրելով և

---

6) Ի. ՍՏԱԼԻՆ—«Հոկտեմբերի ուղիների վրա» ժողովածու, եջ 160:

դավաճանելով հեղափոխության շահերին, այդ համաձայնողական կուսակցությունները փորձում էին կապիտալիստներին ու կալվածատերերին փրկել անխուսափելի կործանումից:

Դեմոկրատական խորհրդակցությունում կազմվեց Նախապառլամենտ (ռուսական հանրապետության ժամանակավոր խորհուրդ), որը կոչված էր իր շողակրատությամբ քողարկելու մոբիլիզացիայի ենթարկվող հակահեղափոխությունը:

Լենինն ու Ստալինը կոչ արին կուսակցությանը՝ բոյկոտի ենթարկել Նախապառլամենտը և զինված ապստամբություն նախապատրաստել: Հակառակ սոոր դավաճաններին — Կամենևին, Ռիկովին և ուրիշներին—որոնք գործելով մենշևիկների ու էսէռների առաջադրանքով — կատաղի պաշտպանում էին Նախապառլամենտին մասնակցելու անհրաժեշտությունը, բոլշևիկյան ֆրակցիան դեմոնստրատիվ կերպով հեռացավ Նախապառլամենտից:



Մենշևիկների ու էսէռների մանյովրները չպսակվեցին և չէին կարող պսակվել հաջողությամբ: Մասսաներին, որոնց համար բոլշևիկյան գաղափարներն արդեն ուրենք էին դարձել, չէր կարելի հեռու պահել հեղափոխության մարտական խնդիրներից: «Ամբողջ իշխանությունը Խորհուրդներին» լոզունգը դարձավ երկրի աշխատավոր մասսաների մեծամասնության մարտական լոզունգը:

Այն ժամանակ, երբ էսէռներն ու մենշևիկները փորձում էին խաբել մասսաներին, բուրժուա-կալվածատիրական հակահեղափոխությունը հարձակման էր անցնում բանվորների ու գյուղացիների դեմ, նախապատրաստում էր ուժերը հեղափոխությունը ջախջախելու համար: Սեպտեմբերի սկզբներին Կերենսկին կարգադրեց զինաթափ անել հեղափոխական զորամասերը: Հոկտեմբերի սկզբներին բուրժուական ժամանակավոր կառավարությունը որոշում ընդունեց հեղափոխական Պետրոգրադից

փախչելու Մոսկվա: Կառավարությունը վորոշեց հեղափոխական մայրաքաղաքը հանձնել գերմանացիներին՝ հեղափոխությունը ջախջախելու համար նախ և առաջ Պետրոգրադում, իսկ այնուհետև ամբողջ յերկրում: «Հակահեղափոխությունը մոբիլիզացիայի յե յենթարկվում—պատրաստվեցե՛ք հակահարվածի» հոդվածի մեջ ընկեր Ստալինը գրում եր.

«Ռազմաճակատում, հատկապես Հարավում և Արևմուտքում, կոռնիլովյան գեներալների դաշնի միությունը տենդագին կերպով նոր արշավանք ե կազմակերպում հեղափոխության դեմ, իր շուրջը համախմբելով սև «աշխատանքի» համար պիտանի բոլոր ուժերը...

Իսկ Կերենսկու կառավարությունը, նույն այն կառավարությունը, վորը Կոռնիլովի հետ միասին դավադրություն կազմակերպեց հեղափոխության դեմ՝ պատրաստվում ե փախչելու Մոսկվա, վորպեսզի Պետրոգրադը հանձնելով գերմանացիներին,



Ռյաբուշինսկիների ու Բուրիշկինների հետ միասին, Կալեդինների ու Ալեքսեյեվների հետ միասին նոր, ե՛լ ավելի ահեղ դավադրություն կազմակերպի հեղափոխության դեմ:

Տարակույսներ անհնարին են: Ի հակակշիռ հեղափոխության ճակատին, կազմավորվում և ամրապնդվում ե հակահեղափոխության ճակատը, կապիտալիստների ու կալվածատերերի, Կերենսկու կառավարության ու Նախապառլամենտի ճակատը: Հակահեղափոխությունը պատրաստում ե նոր կոռնիլովշչինա...

Կոռնիլովշչինան մոբիլիզացիայի յե յենթարկվում—պատրաստվեցե՛ք հակահարվածի»[7]:

Ժամանակավոր կառավարությունը գեներալիտետի հետ միասին ռազմաճակատում լայնորեն ծավալեց աշխատանքը հա-

---

[7]) Ի. ՍՏԱԼԻՆ, «Հոկտեմբերի ուղիների վրա», եջ 200—201:

կահեղափոխական հարվածող գումարտակների ստեղծման ուղղությամբ: Հարվածող գումարտակներն իրենցից ներկայացնում եյին հակահեղափոխության սպիտակ գվարդիա՝ հեղափոխության դեմ պայքարելու համար: Նրանք զինաթափ եյին անում հեղափոխական զորամասերը, ցրում եյին ցույցերը, ավերում եյին պրոլետարական կազմակերպությունները: Հոկտեմբերյան հեղաշրջման մոմենտին Կերենսկու կառավարությունն արդեն ստեղծել եր 40 հարվածող գումարտակ, վորոնք ունեյին 50 հազարից ավելի լավ զինված «հարվածողներ»: Հակահեղափոխության հաշիվներում հսկայական դեր պետք ե խաղային նրա կողմից հեղափոխության դեմ պայքարելու համար ստեղծված լեհական կորպուսը, վորն ուներ ավելի քան 18 հազար զինվոր ու սպա և 25 հազարանոց չեխոսլովակյան կորպուսը: Այդ բուրժուա-նացիոնալիստական զորամասերին հակահեղափոխությունը հանձնարարել եր առաջին հարվածը հասցնել հեղափոխությանը: Հակահեղափոխությունը մեծ հույսեր եր դնում կազակային զորամասերի վրա, վորոնք մոտենում եյին Դոնին և Կուբանին: Բոլոր ռեակցիոն ուժերը համախմբելով ու ստեղծելով միասնական զինված բռունցք, հակահեղափոխությունը միևնույն ժամանակ ռազմաճակատը հրահրում եր Թիկունքի դեմ:



Հակահեղափոխության պլանն այն եր, վոր խոշոր քաղաքներում տեղավորված հեղափոխական զորամասերն ուղարկվեյին ռազմաճակատ, իսկ դրանց փոխարեն բերվեյին «հուսալի» զորամասեր: Բուրժուական հակահեղափոխությունը հատկապես ձգտում եր մաքրել հեղափոխականորեն տրամադրված կայազորները, վորոնք տեղավորված եյին արդյունաբերական խոշոր կենտրոններում, ռազմաճակատ ուղարկելով պահեստի զորամասերի հազարավոր զինվորներ: Գեներալների և Կերենսկու կառավարության այս ամբողջ հակահեղափոխական աշխատանքը կատարվում եր

մենշևիկների ու եսերների օգնությամբ։

Որքան ավելի յեր գործը մոտենում հեղափոխության ու հակահեղափոխության միջև վճռական դոտեմարտին, այնքան ավելի տենդագին կերպով եր բուրժուազիան մոբիլիզացիայի յենթարկում ու կենտրոնացնում իր ուժերը հարձակման համար։

Ժամանակավոր կառավարությունը փորձում ե գլխատել հեղափոխությունը, ձերբակալել և սպանել Լենինին։ 1917 թվականի նոյեմբերի 1-ին (հոկտեմբերի 19-ին) Կերենսկու կառավարությունը հրաման արձակեց Լենինին ձերբակալելու մասին։

Կերենսկու կառավարությունը մշակում եր գերմանացիների հետ սեպարատ հաշտություն կնքելու պլանը, վորպեսզի արձակեր իր ձեռքերը հեղափոխության դեմ հարձակվելու համար։ Բուրժուազիան մենշևիկների ու եսերների ձեռքով շտապ կարգով ստեղծում ե հասարակական անվտանգության կոմիտեներ, հեղափոխական շարժման դեմ պայքարելու համար։ Շտապ



կարգով ռազմաճակատից թիկունք եյին ուղարկվում հեծելազորի զորամասեր։ Պետրոգրադ, Մոսկվա, Դոնբաս, Բրյանսկ, Կիև, Սմոլենսկ և յերկրի մյուս քաղաքներն ու կարևոր կենտրոններն եյին ուղարկվում կազակային գնդեր ու դիվիզիաներ։ Պետրոգրադը հեղեղվում եր կառավարությանը հավատարիմ զորամասերով, գլխավորապես յունկերներով, ռեակցիոն սպայությամբ, կազակային զորամասերով։ Շտապ կարգով ուժեղացվում եր Ձմեռային ու Մարիինյան պալատների, փոստի, հեռագրատան, հեռախոսի և այլնի պահպանությունը։

Այսպիսով, բուրժուազիան ու կալվածատերերն եսերների ու մենշևիկների օգնությամբ պատրաստում եյին իրենց մարտական ուժերը Լենինի-Ստալինի կուսակցության կողմից նախապատրաստվող զինված հեղափոխությունը ճնշելու համար և նշում եյին ամբողջ յերկրում հեղափոխությունը լիկվիդացիայի յենթարկելու հակահեղափոխական պլանը։ Այսպես եյին հեղա-

փոխությունն ու հակահեղափոխությունը պատրաստվում վճռական գոտեմարտի: Մեկ կողմից ժողովրդի մեծամասնությունը՝ Լենինի–Ստալինի կուսակցության գլխավորությամբ, որ պայքարում էր «Ամբողջ իշխանությունը Խորհուրդներին» լոզունգով, մյուս կողմից շահագործող փոքրամասնությունը՝ կալվածատերերից, բուրժուազիայից, գեներալներից մինչև մենշևիկներն ու էսէռները: Ահա հեղափոխության ու ռեակցիայի ուժերի դասավորությունը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության նախօրյակին:

Հեղափոխության մեծագույն հանճար Լենինը, որին Կերենսկու կառավարությունը հալածել, ընդհատակ էր մղել, արթուն հետևում էր յերկրում տեղի ունեցող իրադարձություններին: Նա խորապես ուսումնասիրում էր քաղաքական իրադրությունը, վերլուծում էր դասակարգային ուժերի փոխհարաբերությունը և նշում հեղափոխության հետագա զարգացման ուղիները: Լե-



նինը սիստեմատիկաբար բոլշևիկների Կենտրոնական Կոմիտեյին էր ուղարկում իր նամակները, նրանց մեջ տալով կոնկրետ ցուցումներ ու խորհուրդներ: Սեպտեմբերի 25—27-ը (12—14-ը) Լենինը գրեց յերկու պատմական նամակ,—«Բոլշևիկները պետք է վերցնեն իշխանությունը» և «Մարքսիզմ և ապստամբություն»:

Այդ նամակներում, որոնք նոր ետապ էին նշանակում պրոլետարական հեղափոխության աճման մեջ, Լենինը պատմական կոնկրետ իրադրության և դասակարգային ուժերի դասավորման մարքսիստական անալիզի հիման վրա բոլշևիկյան կուսակցության առջև դնում է զինված ապստամբության նախապատրաստման խնդիրը, յերկրում քաղաքական իշխանությունը նվաճելու համար:

Պրոլետարական հեղափոխության քաղաքական բանակը, որի ստեղծման ու կազմակերպման վրա անդուլ կերպով աշխատում էր Լենինի–Ստալինի կուսակցու-

թյունը, արդեն ստեղծված է: «Ժողովրդի մեծամասնությունը մեր կողմն է,» ,—գրում էր Լենինը: «Մեծամասնություն ստանալով մայրաքաղաքային յերկու Բանվորական ու Զինվորական Պատգամավորների Խորհուրդներում, բոլշևիկները կարող են և պետք է իրենց ձեռքը վերցնեն պետական իշխանությունը»[8]:

«... Մենք կհաղթենք անպայման և անտարակույս»[9],—մեծագույն վստահությամբ ընդգծում էր Լենինը:

«Մարքսիզմ և ապստամբություն» նամակի մեջ Լենինը վերլուծելով այն պայմանները, վորոնք անհրաժեշտ են զինված ապստամբության հաղթանակի համար, կուսակցությանը սովորեցնում է զինված ապստամբության արվեստը, նշելով նրա կոնկրետ պլանը:

«Հաջող լինելու համար,—գրում էր Լենինը,—ապստամբությունը պետք է հենվի

8) Վ. Ի. ԼԵՆԻՆ — Յերկեր, հատ. XXI, եջ 193:
9) Նույն տեղը, եջ 194:



վոչ թե դավադրության, վոչ թե կուսակցության, այլ առաջավոր դասակարգի վրա: Այս՝ նախ և առաջ: Ապստամբությունը պետք է հենվի ժողովրդի հեղափոխական վերելքի վրա: Այս՝ յերկրորդ: Ապստամբությունը պետք է հենվի աճող հեղափոխության պատմության այնպիսի բեկման կետի վրա, յերբ ժողովրդի առաջավոր շարքերի ակտիվությունն ամենամեծ չափերի յե հասել, յերբ ամենաուժեղ չափի յեն հասել տատանումները թշնամիների շարքերում և հեղափոխության թույլ, անվճռական կիսամիջոցներով բավարարվող բարեկամների շարքերում: Այս՝ յերրորդ»[10]:

Այն հարցին, թե հաջող ապստամբության համար մատնանշված պայմանները մեզ մոտ կա՞ն արդյոք տվյալ կոնկրետ մոմենտին, Լենինը տալիս է դրական պատասխան: Կուսակցությանը պաշտպանում է պրոլետարիատի — հեղափոխության ա-

10) Վ. Ի. ԼԵՆԻՆ, Յերկեր, հ. XXI, եջ 195:

վանդարդի մեծամասնությունը, որն իր հետևից է տանում ժողովրդական լայն մասսաներին: «Մեր կողմն է ժողովրդի մեծամասնությունը... Մեր կողմն է այնպիսի կուսակցության դրության շահավետությունը, որը հաստատապես գիտե իր ուղին, մինչդեռ թե՛ ամբողջ իմպերիալիզմը, թե՛ մենշևիկների ամբողջ բլոկը էսերների հետ հանդես են բերում չլսված տատանումներ:

Մեր կողմն է հաստատ հաղթանակը...»[11])

Լենինի այս նամակները բոլշևիկների կուսակցության Կենտրոնական Կոմիտեն քննարկեց 1917 թվականի սեպտեմբերի 28(15)-ի իր նիստում: Ընկեր Ստալինը պաշտպանելով զինված ապստամբության լենինյան գիծը, առաջարկեց Լենինի նամակներն ուղարկել կարևորագույն կուսակցական կազմակերպություններին՝ ի ղեկա-

11) Վ. Ի. ԼԵՆԻՆ, Երկեր, հատ. XXI, էջ 196—197:



վարություն: Դավաճան Կամենևը շարունակելով պայքարը կուսակցության դեմ, դավաճանորեն դեմ դուրս յեկավ Լենինին, առաջարկելով այրել Լենինի նամակները: Մատնիչ Կամենևը վճռական հակահարված ստացավ Կենտկոմի կողմից, նրա դավաճանական առաջարկը զայրույթով մերժվեց: Կուսակցության Կենտրոնական օրգան «Ռաբոչի Պուտը» ընկեր Ստալինի ղեկավարությամբ քաղաքական մեծ աշխատանք ծավալեց բանվորներին, զինվորներին և գյուղացիներին իշխանության համար պայքարի նախապատրաստելու ուղղությամբ: «Ամբողջ իշխանությունը Խորհուրդներին» հոդվածի մեջ ընկեր Ստալինը գրում էր՝ «Կա՛մ Կերենսկու կառավարության իշխանություն,—և այն ժամանակ կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետություն, պատերազմ և փլուզում:

Կա՛մ Խորհուրդների իշխանություն,— և այն ժամանակ բանվորների ու գյուղացի-

ների տիրապետություն, հաշտություն և փլուզման վերացում»[12]:

Ապստամբության կազմակերպման գործում հսկայական դեր խաղաց Լենինի «Ճգնաժամը հասունացել է» հոդվածը, որը նա գրեց 1917 թվականի սեպտեմբերի վերջերին.

«Տարակույս չկա, սեպտեմբերի վերջը մեծագույն բեկում բերեց մեզ, ռուսական, իսկ ամենայն հավանականությամբ նաև համաշխարհային հեղափոխության պատմության մեջ»[13]:

Լենինը նորից ու նորից դնում է իշխանության անհապաղ գրավելու հարցը, կոնկրետացնում և լրացնում է ապստամբության նախապատրաստման իր հանճարեղ պլանը:

1917 թվականի հոկտեմբերի 16—20-ը (3—7-ը) Լենինը մի նամակ է գրում Կենտ-

---

12) Ի. ՍՏԱԼԻՆ, «Հոկտեմբերի ուղիների վրա», էջ 169.

13) Վ. Ի. ԼԵՆԻՆ, Երկեր հատոր XXI, էջ 235:



կոմին, Մոսկվայի կոմիտեյին, Պետրոգրադի կոմիտեյին և Պիտերի ու Մոսկվայի Խորհուրդների բոլշևիկ անդամներին, որի մեջ առաջարկում է անհապաղ վերցնել իշխանությունը:

Հոկտեմբերի 21(8)-ին, կուսակցության Կենտկոմի պատմական նիստից յերկու օր առաջ, Լենինը գրեց «Կողմնակի մարդու խորհուրդներ» հոդվածը, որի մեջ կուսակցությանն ու բանվոր դասակարգին տվեց զինված ապստամբության հանճարեղ պլանը: Զարգացնելով և ընդհանրացնելով Մարքսի ու Էնգելսի հայացքները զինված ապստամբության մասին, ընդգծելով, որ ապստամբությունն արվեստ է, Լենինը մատնանշում էր այն կանոնները, որոնցով անհրաժեշտ է ղեկավարվել զինված ապստամբության հաղթանակն ապահովելու համար.

«1) Երբեք խաղ չանել ապստամբության հետ, այլ սկսելով այն, հաստատա-

պես գլխենալ, վոր պետք է գնալ մինչև վերջ:

2) Անհրաժեշտ է ուժերի մեծ գերակշռություն հավաքել վճռական տեղում, վճռական մոմենտին, քանի վոր այլապես ավելի լավ պատրաստված ու կազմակերպված հակառակորդը կվոչնչացնի ապստամբներին:

3) Յեթե ապստամբությունն սկսված է, պետք է գործել մեծագույն վճռականությամբ և անպատճառ, անպայման անցնել հարձակման: «Պաշտպանությունը զինված ապստամբության մահն է»:

4) Պետք է աշխատել հանկարծակիի բերել հակառակորդին, վորսալ մոմենտը, քանի դեռ նրա զորքերը ցրված են:

5) Պետք է ձեռք բերել ամեն որ, թեկուզ փոքր հաջողություններ (կարելի յե ասել ամեն ժամ, յեթե խոսքը մեկ քաղաքի



մասին է), ինչ գնով էլ լինի պահպանելով «բարոյական գերակշռությունը» 17):

Այնուհետև Լենինը ծավալեց բուն ապստամբության կազմակերպման կոնկրետ պլանը.

«Ռուսաստանի և 1917 թվականի հոկտեմբերի վերաբերմամբ այդ նշանակում է միաժամանակյա, հնարավորին չափ ավելի հանկարծակի ու արագ հարձակում Պիտերի վրա, անպայման և' դրսից, և' ներսից, և' բանվորական թաղամասերից, և' Ֆինլանդիայից, և' Ռևելից, Կրոնշտադտից, ամբողջ նավատորմիղի հարձակում, ուժերի վիթխարի գերակշռության կուտակում մեր «բուրժուական գվարդիայի» (յունկերների), մեր «վանդեյական զորքերի» (կազակների մի մասը) և այլն 15—20 հազարի (իսկ գուցե նաև ավելի) նկատմամբ:

Կոմբինացնել մեր յերեք գլխավոր ուժերը—նավատորմիղը, բանվորներին և զո-

14) Վ. Ի. ԼԵՆԻՆ, Յերկեր հատ. XXI, էջ 319—320:

պես գիտենալ, վոր պետք է գնալ մինչև վերջ:

2) Անհրաժեշտ է ուժերի մեծ գերակշռություն հավաքել վճռական տեղում, վճռական մոմենտին, քանի վոր այլապես ավելի լավ պատրաստված ու կազմակերպված հակառակորդը կվոչնչացնի ապստամբներին:

3) Յեթե ապստամբությունն սկսված է, պետք է գործել մեծագույն վճռականությամբ և անպատճառ, անպայման անցնել հարձակման: «Պաշտպանությունը զինված ապստամբության մահն է»:

4) Պետք է աշխատել հանկարծակիի բերել հակառակորդին, վորսալ մոմենտը, քանի դեռ նրա զորքերը ցրված են:

5) Պետք է ձեռք բերել ամեն որ, թեկուզ փոքր հաջողություններ (կարելի յե ասել ամեն ժամ, յեթե խոսքը մեկ քաղաքի



մասին է), ինչ գնով ել լինի պահպանելով «բարոյական գերակշռությունը» 17):

Այնուհետև Լենինը ծավալեց բուն ապստամբության կազմակերպման կոնկրետ պլանը.

«Ռուսաստանի և 1917 թվականի հոկտեմբերի վերաբերմամբ այդ նշանակում է միաժամանակյա, հնարավորին չափ ավելի հանկարծակի ու արագ հարձակում Պիտերի վրա, անպայման և' դրսից, և' ներսից, և' բանվորական թաղամասերից, և' Ֆինլանդիայից, և' Ռեվելից, Կրոնշտադտից, ամբողջ նավատորմիղի հարձակում, ուժերի վիթխարի գերակշռության կուտակում մեր «բուրժուական գվարդիայի» (յունկերների), մեր «վանդեյական զորքերի» (կազակների մի մասը) և այլն 15—20 հազարի (իսկ գուցե նաև ավելի) նկատմամբ:

Կոմբինացնել մեր յերեք գլխավոր ուժերը—նավատորմիղը, բանվորներին և զո-

---

14) Վ. Ի. ԼԵՆԻՆ, Յերկեր հատ. XXI, եջ 319—320:

բամասերն այնպես, վոր անպայման գրավվեն և թեկուզ ինչպիսի զոհերի գնով՝ պահպանվեն ա) հեռախոսը, բ) հեռագիրը, գ) յերկաթուղային կայարանները, դ) կամուրջները՝ առաջին հերթին։

Առանձնացնել ամենավճռական տարրերին (մեր «հարվածայիններին ու բանվոր յերիտասարդությանը, ինչպես նաև լավագույն նավաստիներին) վոչ խոշոր ջոկատների մեջ, նրանց միջոցով բոլոր կարևորագույն կետերը գրավելու համար և վորպեսզի նրանք մասնակցեն ամենուրեք բոլոր կարևորագույն գործողություններին, օրինակ՝

Շրջապատել և կտրել Պիտերը, գրավել այն նավատորմիղի, բանվորների ու զորքի կոմբինացված գրոհով,—ահա խնդիրը, վորը պահանջում է հմտություն և յեռապատիկ համարձակություն։

Կազմել լավագույն բանվորների ջոկատներ՝ հրացաններով և ռումբերով, թշնամու «կենտրոնների» վրա հարձակվելու և



դրանք շրջապատելու համար (յունկերական դպրոցներ, հեռախոս ու հեռագիր և այլն), լոզունգ ունենալով՝ կզոհվենք բոլորս, բայց բաց չենք թողնի հակառակորդին» 15)։

Լենինյան այս հանճարեղ պլանով իր ղեկավարվում Լենինի–Ստալինի կուսակցությունը, զինված ապստամբություն կազմակերպելով 1917 թվականի հոկտեմբերին։

1917 թվականի հոկտեմբերի 23–ին (10–ին) տեղի յե ունենում բոլշևիկների կուսակցության Կենտրոնական Կոմիտեյի պատմական նիստը, վորտեղ քննության է առնվում ապստամբության նախապատրաստման հարցը։ Ընթացիկ մոմենտի մասին զեկուցման մեջ Լենինը հայտարարեց, վոր քաղաքական իրադրությունն ապստամբության համար պատրաստ է, ուստի անհրաժեշտ է տեխնիկապես նախապատրաստել այն։ Կենտկոմն ընդունեց զինված ապստամբության մասին Լենինի կողմից գրված բանաձևը։

---

15) Վ. Ի. ԼԵՆԻՆ, Յերկեր հ. XXI, եջ 310—320։

«Այսպիսով ընդունելով, որ զինված ապստամբությունն անխուսափելի յե և միանգամայն հասունացած,—ասված է բանաձևի մեջ,—Կենտկոմն առաջարկում է կուսակցության բոլոր կազմակերպություններին ղեկավարվել սրանով և այս տեսակետից քննարկել ու լուծել բոլոր գործնական հարցերը...» 16):

Այս բանաձևի դեմ, ապստամբության դեմ քվեարկեցին հեղափոխության դավաճաններ Զինովյեվն ու Կամենևը:

Կենտկոմի վորոշումների, Լենինի ու Ստալինի ցուցումների հիման վրա ծավալվեց բոլշևիկների վիթխարի աշխատանքը ապստամբության նախապատրաստման ուղղությամբ: Հրավիրվեց հյուսիսային մարզի խորհուրդների համագումար՝ Պետրոգրադի և մայրաքաղաքին մոտիկ գտնվող՝ Ֆինլանդիայի, Մերձբալթյան ու հյու-

---

16) Վ. Ի. ԼԵՆԻՆ, Յերկեր հատոր XXI, եջ 330։



սիսային ճակատի քաղաքների խորհուրդների ներկայացուցիչներից:

Կուսակցության Կենտկոմն Ուրալ, Դոնբաս, Կրոնշտադտ, հարավ-արեմտյան ճակատը և այլ տեղեր ուղարկում է լիազորներ, վորոնք տեղական բոլշևիկյան կազմակերպություններին են հաղորդում Կենտկոմի կոնկրետ հրահանգները—ամեն կերպ պաշտպանել յելույթը մայրաքաղաքում, թույլ չտալ վոր զորքն ոգնության գնա ժամանակավոր կառավարությանը, վերցնել իշխանությունը հենց վոր կստացվի Կենտկոմի ցուցումը: Բոլշևիկներն արագացրին Կարմիր գվարդիայի կազմակերպումը, ուժեղացրին աշխատանքը նավաստիների ու զինվորների մեջ: Բոլշևիկների Կենտկոմի հոկտեմբերի 29-ի (16-ի) նիստում ստեղծվում է Ռազմա-հեղափոխական կենտրոն—«հնգյակ»—ընկեր Ստալինի ղեկավարությամբ:

Այդ նիստում ընդունված բանաձևի մեջ Կենտկոմը կոչ եր անում բոլոր կազմակեր-

պություններին և բոլոր բանվորներին ու զինվորներին՝ բազմակողմանիորեն և ամենաուժեղ Թափով նախապատրաստվել զինված ապստամբությանը, կոչ էր անում պաշտպանել այդ նպատակով Կենտրոնական Կոմիտեյի կողմից ստեղծվող կենտրոնը:

Այդ նիստում ևս դավաճաններ՝ Զինովյեվն ու Կամենեվը դեմ քվեարկեցին Կենտկոմի բանաձևին, դեմ քվեարկեցին ապստամբությանը: Հոկտեմբերի 18-ին, Կենտկոմի նիստից հետո, սոցիալիզմի գործի ըկտի դավաճաններ Կամենեվն ու Զինովյեվը «Новая жизнь» ոչ բոլշևիկյան Թերթում մի նամակ հրապարակեցին, որի մեջ դեմ դուրս յեկան բոլշևիկների կողմից նախապատրաստվող զինված ապստամբությանը: Դավաճաններ Կամենեվն ու Զինովյեվը դիտավորյալ կերպով, իսկ Տրոցկին իր պարծենկոտ շաղակրատությամբ հակահեղափոխությանը մատնեցին ապստամբության լենինյան-ստալինյան պլանը և ապստամբության ժամկետը:



Կենտկոմին ուղղված իր նամակների մեջ Լենինն ամենախիստ կերպով անարգանքի սյունին գամեց Զինովյեվի ու Կամենեվի դավաճանությունը և պահանջեց վտարել նրանց կուսակցությունից որպես շտրայկբրեխերների, որպես սոցիալիստական հեղափոխության շահերը մատնողների:

«Ուրեմն ի՞նչպես կարելի յե պատրաստվել զինված ապստամբությանը և նախապատրաստել այն, իր շարքերում հանդուրժելով «աչքի ընկնող» շտրայկբրեխերների» —խոր զայրույթով հարց է տալիս Լենինը Կենտկոմին ուղարկած հոկտեմբերի 19-ի իր նամակի մեջ, պնդելով, որպեսզի ձեռք առնվեն ամենավճռական միջոցներ: Կենտրոնական Կոմիտեն քննության առավ Լենինի նամակը, Կամենեվին հանեց Կենտկոմի կազմից: Դավաճաններին արգելվեց հանդես գալ կուսակցության անունից:

Լենինի-Ստալինի կուսակցությունը նաև վճռական պայքար էր մղում Հուդա-Տրոցկու դավաճանության դեմ, Տրոցկու, որն

այժմ լրտեսների, դիվերսանտների ու մարդասպանների ատամանն է, որն ապստամբության վրա նայում է որպես կործանման, չէր հավատում նրա հաղթանակին և առաջարկում էր զինված ապստամբությունը հետաձգել մինչև Խորհուրդների համագումարի բացման մոմենտը։

Զինովյեվի, Կամենեվի դավաճանությունը պատահական չէր։ Մեր կուսակցության պատմության յերկար տարիների ընթացքում նրանք նույնպես, ինչպես և Հուդա–Տրոցկին, լկտի պայքար են մղել կուսակցության դեմ, Լենինի դեմ։ 1917 թվականին պաշտպանելով մենշևիկների գիծը, Կամենեվը, Զինովյեվը, Տրոցկին, Ռիկովը, Բուխարինը, Պյատակովը ժխտում էին մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունը, չէին հավատում բանվոր դասակարգի ուժին, գյուղացիական լայն մասսաներն իր հետևից տանելու նրա ընդունակությանը։ Այդ դավաճաններն ու մատնիչներն արդեն 1917 թվականին պայ-



քարում էին հանուն բուրժուական դիկտատուրայի պահպանման, իսկ Հոկտեմբերյան զինված ապստամբության հաղթանակի յերկրորդ օրը Զինովյեվը, Կամենեվը, Ռիկովը և մյուսները հանդես էին գալիս բանվոր դասակարգի կողմից արդեն նվաճված դիկտատուրայի դեմ, պաշտպանելով համաձայնությունը մենշևիկների ու էսէռների հետ, որոնք Կերենսկու ու Կոռնիլովի հետ միասին զենք բարձրացրին Խորհուրդների իշխանության դեմ։ Նրանք առաջարկում էին կազմել այնպիսի կառավարություն, որի մեջ մտնեյին բոլոր կուսակցությունների ներկայացուցիչները — բոլշևիկներից սկսած մինչև ժողովրդական սոցիալիստները, մի բան, որը նշանակում էր լիակատար հրաժարում պրոլետարիատի դիկտատուրայից, պայքար սոցիալիզմի դեմ, կապիտուլյացիա հակահեղափոխության առաջև։

Իմանալով ապստամբության ժամկետի մասին, Կերենսկու կառավարությունը

շտապ միջոցներ ձեռք առավ հեղափոխության հարված հասցնելու համար և սկսեց շտապ կարգով մոտեցնել հակահեղափոխական զորամասերը: Հակահեղափոխության հարվածը նախատեսված էր հոկտեմբերի 24-ին: Այդ որը Կերենսկու կառավարությունը կարգադրեց փակել բոլշևիկյան «Ռաբոչի Պուտ» և «Սոլդատ» թերթերը, բաց անել կամուրջները՝ թաղամասերը միմյանցից անջատելու նպատակով և ձեռք առավ մի շարք այլ միջոցներ:

Հասել էր վճռական մոմենտը: Նոյեմբերի 6-ի (հոկտեմբերի 24-ի) վաղ առավոտյան «Ռաբոչի Պուտ» թերթում լույս է տեսնում ընկեր Ստալինի «Ի՞նչ է մեզ հարկավոր» հոդվածը: Հոդվածի մեջ ընդգծվում է.

«Իշխանությունը պետք է անցնի Բանվորական, Զինվորական և Գյուղացիական Պատգամավորների Խորհուրդների ձեռքը:

Իշխանության գլուխ պետք է կանգնի նոր կառավարություն՝ ընտրված Խոր-



հուրդների կողմից, Խորհուրդների կողմից փոխարինվող, Խորհուրդների առջև պատասխանատու»[17]: Նոյեմբերի 6-ի (հոկտեմբերի 24-ի) առավոտյան տեղի յե ունենում բոլշևիկյան կուսակցության Կենտկոմի նիստը, վորտեղ վորոշում է ընդունվում Կենտկոմի անդամների միջև պարտականությունները բաշխելու մասին՝ ապըստամբությունը գործնականորեն ղեկավարելու համար:

Ռազմա-հեղափոխական կոմիտեյի կարգադրությամբ բոլոր զորամասերը բերվում են մարտական պատրաստության: Նոյեմբերի 6-ի (հոկտեմբերի 24-ի) ամբողջ որվա ընթացքում զենք է բաժանվում զորամասերին և կարմիր գվարդիային: Պետրոգրադի պրոլետարները զինվում են:

Նոյեմբերի 6-ի (հոկտեմբերի 24-ի) յերեկոյան Լենինը մի նամակ է գրում Կենտ-

---

17) Ի. ՍՏԱԼԻՆ, «Հոկտեմբերի ուղիների վրա», էջ 216:

կոմի անդամներին, նամակ, վորը տոգորված եր մեծ կրքոտությամբ ու վստահությամբ դեպի հաղթանակը. «Յես այս տողերը գրում եմ 24-ի յերեկոյան, դրությունն աննկարագրելի չափ կրիտիկական ե: Պարզից ել պարզ ե, վոր այժմ արդեն իսկապես ապստամբության հապաղումը մահվան ե հավասար:

Ամբողջ ուժով համոզում եմ ընկերներին, վոր այժմ ամեն ինչ մազից ե կախված, վոր հերթի յեն դրված այնպիսի հարցեր, վորոնք վոչ թե խորհրդակցությունները են լուծում, վոչ թե համագումարները (թեկուզ անգամ Խորհուրդների համագումարները), այլ բացառապես ժողովուրդները, մասսան, զինված մասսաների կռիվը... Պետք ե, ինչպես ել վոր լինի, այսոր յերեկոյան, այս գիշեր ձերբակալել կառավարությունը, զինաթափ անելով (հաղթելով՝ յեթե դիմադրեն) յունկերներին և այլն...

Կառավարությունը տատանվում ե:



Պետք ե վերջնականապես ջախջախել նրան, ինչպես ել վոր լինի»[18]):

Զինված ապստամբությունն սկսվեց Լենինի և Ստալինի ղեկավարությամբ 1917 թվականի նոյեմբերի 6-ի՝ լույս 7-ի (հոկտեմբերի 24-ի՝ լույս 25-ի) գիշերը:

Նոյեմբերի 6-ի (հոկտեմբերի 24-ի) յերեկոյան հեղափոխական զորքերն ու կարմիր գվարդիականները հանդես են գալիս Ձմեռային պալատի մատույցները գրավելու համար: Նոյեմբերի 6-ի ուշ գիշերը Լենինը գալիս ե Սմոլնի: Լենինն ու Ստալինը նշում են զինված ապստամբության ղեկավարման ուղղությամբ հետագա գործողությունների պլանը: Նոյեմբերի 7-ի (հոկտեմբերի 25-ի) առավոտյան կարմիր գվարդիականները, նավաստիներն ու հեղափոխական զինվորները Լենինի ու Ստալինի կողմից ստույգ կերպով մշակված պլանով գրավում են կայարանները, հեռագրատունը, հեռախոսը,

---

18) Վ. Ի. ԼԵՆԻՆ, Յերկեր հատ. XXI, եջ 362 և 363:

կամուրջները, մի քանի ժամից հետո գրավվում են Մարիական պալատը, որտեղ տեղի յեր ունենում Նախապառլամենտի նիստը, ռազմական նավահանգիստը, գլխավոր ծովակալության շենքը, պետական բանկը և այլն: Իսկ հոկտեմբերի լույս 26-ի (Նոյեմբերի 8-ի) գիշերը (ժամը 2-ին) գրավվեց Ձմեռային պալատը: Ժամանակավոր կառավարությունը ձերբակալվեց, փախչել հաջողվեց միայն Կերենսկուն:

Զինված ապստամբությունը, որը ղեկավարում եյին բոլշևիկները՝ Լենինի ու Ստալինի գլխավորությամբ, հաղթանակեց:

Նոյեմբերի 7-ին (հոկտեմբերի 25-ին) Ռազմա-հեղափոխական կոմիտեն հրապարակեց Լենինի գրած կոչը՝ ուղղված «Ռուսաստանի քաղաքացիներին»: Այդ կոչի մեջ ասված եր·

«Այն գործը, որի համար պայքարում եր ժողովուրդը՝ անհապաղ դեմոկրատական հաշտություն առաջարկելը, հողի նկատմամբ կալվածատիրական սեփականության



վերացումը, բանվորական վերահսկողությունն արտադրության նկատմամբ, խորհրդային կառավարության ստեղծումը— այդ գործն ապահովված է»[19]: Նույն այդ օրը, ժամը 2-ից 30-րոպե անց, տեղի յե ունենում բանվորական ու զինվորական պատգամավորների Պետրոգրադի խորհրդի նիստը, որտեղ Լենինը զեկուցում է խորհուրդների իշխանության խնդիրների մասին: Ընդգծելով սոցիալիստական հեղափոխության պատմական նշանակությունը, Լենինը հայտարարեց·

«Այսօրվանից նոր շրջան է սկսվում Ռուսաստանի պատմության մեջ, և ռուսական այս յերրորդ հեղափոխությունը պետք է իբրև իր վերջնական արդյունք հասցնի սոցիալիզմի հաղթանակին»[20]:

Պայքարը ԽՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման համար, լիովին ու ամբողջությամբ հաստատեց լենինյան կանխատեսու-

---

19) Վ. Ի. ԼԵՆԻՆ, Յերկեր հատ. XXII, եջ 3:
20) Նույն տեղը, եջ 4:

մը Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հեռանկարների մասին։ Բանվոր դասակարգի դիկտատուրայի հիման վրա պրոլետարիատն ու գյուղացիության աշխատավոր շերտերը Լենինի–Ստալինի մեծ կուսակցության ղեկավարությամբ հասան ԽՍՀՄ–ում սոցիալիզմի վերջնական հաղթանակին։ Սոցիալիզմը ԽՍՀՄ–ի համար այն է, «ինչ արդեն ձեռք է բերված և նվաճված է գործնականում» (Ստալին)։

* * *

Ի՞նչն ապահովեց սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը։

Հեղափոխության գլուխ կանգնած էր կուսակցության ներսում և նրանից դուրս բազմաթիվ թշնամիների դեմ մղված մարտերում փորձված ու կոփված բոլշևիկյան կուսակցությունը, Լենինի և Ստալինի ղեկավարությամբ։

Ռուսաստանի պրոլետարիատի հսկայական մեծամասնությունը, գյուղական չքավորությունը և զինվորների մեծամասնու-



թյունը գնում էին Լենինի–Ստալինի կուսակցության լոզունգների հետևից։

Ընկեր Ստալինն ընդգծում է Սոցիալիստական մեծ հեղափոխության նախապատրաստման շրջանում բոլշևիկների կուսակցության տակտիկայի չորս կարևորագույն առանձնահատկությունները․

1) «...մեկ կուսակցության, կոմունիստների կուսակցության անբաժան ղեկավարությունը, որպես Հոկտեմբերի նախապատրաստման հիմնական մոմենտ»,

2) «...մենշևիկների և եսերների կուսակցությունների մեկուսացում», առանց որի անհնարին կլիներ հեղափոխության հաղթանակը,

3) «խորհուրդները պետական իշխանության որգանների վերածելու քաղաքականությունը, որպես համաձայնողական կուսակցությունների մեկուսացման և պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակի կարևորագույն պայման»,

4) «...մասսաներին նրանց սեփական փորձով հեղափոխական դիրքերին մոտեց-

նելու միջոցով կուսակցական լոզունգների ճշտության մեջ համոզել կարողանալը, որպես միլիոնավոր աշխատավորներին կուսակցության կողմը նվաճելու կարևորագույն պայման»[21):

Արտաքին բնույթի մի ամբողջ շարք հանգամանքներ ևս ապահովեցին Սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում: Անգլո-ֆրանսիական և ավստրո-գերմանական իմպերիալիստները, որոնք զբաղված էին միմյանց միջև մղվող կատաղի պայքարով, ուժ չունեին Ռուսաստանում հեղափոխությունը ճնշելու համար: Հաշտության մասին խորհրդային կառավարության հրապարակած դեկրետը խորհրդային իշխանության համար մասսայական աջակցություն ստեղծեց Արևմուտքի բանվորների և Արևելքի ճնշված ժողովուրդների կողմից: Հեղափոխական ճգնաժամի հասունացումը կապիտալի յերկիրներում,

---

21) Ի. ՍՏԱԼԻՆ, «Լենինիզմի հարցերը», էջ 91—98, 10-րդ հրատ.:



խորհրդային կառավարության համար հավատարիմ դաշնակիցներ ապահովեց նաև Ռուսաստանի սահմաններից դուրս, համաշխարհային բուրժուազիայի դեմ նրա մղած պայքարում:

* * *

1917 թվականի նոյեմբերի 7-ին (հոկտեմբերի 25-ին) սկսեց իր աշխատանքը բանվորական ու զինվորական պատգամավորների խորհուրդների պատմական յերկրորդ համագումարը, որ հրապարակեց համաշխարհային-պատմական դեկրետները հաշտության մասին, հողի մասին, խորհրդային կառավարություն—ժողովրդական կոմիսարների խորհուրդ—ստեղծելու մասին:

Խորհուրդների համագումարն ընդունեց Լենինի կողմից գրված կոչը ուղղված «Բանվորներին, զինվորներին և գյուղացիներին»՝ իշխանությունը խորհուրդներին անցնելու մասին: Այդ կոչի մեջ ասված էր՝ «Հենվելով բանվորների, զինվորների ու գյուղացիների հսկայական մեծամասնության կամ-

քի վրա, հենվելով բանվորների կայազորի՝ Պետրոգրադում տեղի ունեցած հաղթական ապստամբության վրա, Համագումարն իշխանությունը վերցնում է իր ձեռքը» 22): Կոչի մեջ ընդգծվում եր, վոր խորհրդային իշխանությունը յերկրի ժողովուրդների համար կապահովի հաշտությունը, պրոլետարիատին և գյուղացիությանը դուրս կբերի քառամյա իմպերիալիստական արյունոտ սպանդի կոշմարից, վորը կլանեց միլիոնավոր մարդկանց, առանց փրկագնի կապահովի կալվածատիրական, արքունական ու վանքապատկան հողերի հանձնումը գյուղացիական կոմիտեների տրամադրությանը, կկիրառի բանակի դեմոկրատացումը, բանվորական վերահսկողություն կսահմանի արտադրության ու բաշխման նկատմամբ, կվոչնչացնի ազգային ճնշումը և կապահովի Ռուսաստանում բնակվող բոլոր ազգերի ինքնորոշման իսկական իրավունքը: Համագումարը հայտարարեց, վոր իշխանությունը

22) ԼԵՆԻՆ, Յերկեր հատ. XXII, եջ 11·



տեղերում պետք է անհապաղ անցնի բանվորական, զինվորական և գյուղացիական պատգամավորների խորհուրդներին:

Խաղաղության մասին Լենինի գրած դեկրետը, վորն ընդունվեց Խորհուրդների համագումարի կողմից նոյեմբերի 8-ին (հոկտեմբերի 26-ին), հանդիսացավ իմպերիալիզմի դեմ հանուն խաղաղության, հանուն միջազգային պրոլետարական հեղափոխության մղվող պայքարի մեծագույն զենքը: Այդ դեկրետը վճռականորեն ու մինչև վերջ ամբողջ աշխարհի աշխատավոր մասսայի առջև մերկացրեց իմպերիալիստական բուրժուազիայի կողոպտիչ նպատակները: Խաղաղության մասին դեկրետն ամբողջ աշխարհի պրոլետարներին կոչ եր անում պայքարել իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու համար, պայքարել բուրժուազիայի դեմ, հանուն սոցիալիզմի: Հաշտության դեկրետը կապիտալիստական յերկրների բանվոր դասակարգին վոտքի հանեց պաշտպանելու խորհրդային իշխանությունը, այդ դեկրետը խորհուրդ-

ների իշխանության շուրջը համախմբեց Ռուսաստանի ժողովուրդներին՝ իմպերիալիստական արյունալի սպանդի հետևանքով տանջված՝ բազմամիլիոն մասսաներին, ամրացրեց բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքը սոցիալիզմի համար մղվող պայքարում:

Նույն օրը խորհուրդների համագումարն ընդունեց Լենինի կողմից գրված դեկրետը հողի մասին և կազմեց խորհրդային կառավարություն—Ժողովրդական կոմիսարների խորհուրդ՝ Լենինի գլխավորությամբ: Ազգությունների գործերի ժողովրդական կոմիսար ընտրվեց ընկեր Ստալինը:

Աշխատավոր գյուղացիներն ստացան ավելի քան 150 միլիոն հեկտար նախկին կալվածատիրական, արքունական ու վանքապատկան հողեր: Սոցիալիստական մեծ հեղափոխությունը լրիվ վերացրեց կալվածատիրական հողատիրությունը, գյուղացիության աշխատավոր մասսաներին ազատեց կալվածատիրական ստրկությունից, աղքատությունից, քայքայումից ու սովից,



ուղի բաց արեց դեպի գյուղի սոցիալիստական վերափոխությունը, ուղի, վորը հասցրեց կոլտնտեսային կարգի վերջնական հաղթանակին սոցիալիզմի հաղթանակին նաև գյուղատնտեսության մեջ:

* * *

ԽՍՀՄ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, վոր կատարեց բանվոր դասակարգը, ամենաչքավոր գյուղացիության հետ դաշն կնքած՝ Լենինի—Ստալինի կուսակցության ղեկավարությամբ, ուժգին շրջադարձ հանդիսացավ մարդկության համաշխարհային պատմության մեջ, շրջադարձ հին կապիտալիստական աշխարհից, ստրկության, ճնշման ու բռնության աշխարհից դեպի սոցիալիստական նոր աշխարհը: Մեր յերկրում կատարված Սոցիալիստական հեղափոխությունը ճեղքեց համաշխարհային իմպերիալիզմի ճակատը, տապալեց իմպերիալիստական բուրժուազիային և յերկրագնդի մեկ վեցերորդական մասում ամրացրեց պրոլետարական դիկտատուրայի դրոշը: Պրոլետարիատը, վորը նա-

խապատրաստված էր բոլշևիկյան կուսակցության վողջ նախորդ պայքարով, Լենինի ու Ստալինի ղեկավարությամբ համաշխարհային բանվորական շարժման պատմության մեջ առաջին անգամ հաստատապես նվաճեց քաղաքական իշխանությունը, առաջին անգամ դարձավ տիրապետող դասակարգ, իր մեծ որինակով վարակելով ամբողջ աշխարհի պրոլետարներին։ Հոկտեմբերյան հեղափոխությունը նոր դարաշրջան բաց արեց, համաշխարհային պրոլետարական հեղափոխության դարաշրջան իմպերիալիզմի յերկրներում։

«Հոկտեմբերյան հեղափոխության համաշխարհային նշանակությունը վոչ միայն այն է, վոր նա մեկ յերկրի մեծ նախաձեռնությունն է հանդիսանում իմպերիալիզմի սիստեմը ճեղքելու գործում, և սոցիալիզմի առաջին ոջախն իմպերիալիստական յերկրների ովկիանոսում, այլև այն, վոր նա կազմում է համաշխարհային հեղափոխության



առաջին ետապն ու նրա հետագա ծավալման հզոր բազան»[23]։

ԽՍՀՄ-ն ամբողջ աշխատավոր մարդկության փարոսն է, նրա հույսն ու խաղաղության հավատարիմ պաշտպանը։ ԽՍՀ Միությունն ամբողջ աշխարհի ճնշվածների ու չահագործվողների սոցիալիստական հայրենիքն է։ ԽՍՀՄ-ը համաշխարհային սոցիալիստական հեղափոխության հարվածային բրիգադն է։

Հոկտեմբերյան հեղափոխությունը ըսկիզբ դրեց համաշխարահային պատմության նոր շրջանին—բանվոր դասակարգի դիկտատուրայի շրջանին։ Հոկտեմբերյան հեղափոխությունը պառակտեց աշխարհը, բաժանելով այն յերկու սիստեմի—ծաղկող սոցիալիզմի սիստեմ և մեռնող կապիտալիզմի սիստեմ։

Սոցիալիստական մեծ հեղափոխությունը հավերժացրեց լենինիզմի փայլուն հաղ-

---

23) Ի. ՍՏԱԼԻՆ, Լենինիզմի հարցերը, եջ 101, 10-րդ հրատարակություն։

*թանակը. «Հոկտեմբերյան հեղափոխության մեծ նշանակությունը, ի միջի այլոց, այն է, որ նա հավերժացնում է լենինիզմի անխուսափելի հաղթանակը սոցիալ դեմոկրատիզմի նկատմամբ՝ համաշխարհային բանվորական շարժման մեջ։*

*Բանվորական շարժման մեջ* II *Ինտերնացիոնալի և սոցիալ-դեմոկրատիզմի տիրապետության դարաշրջանը* վերջացավ։

Հասել է *լենինիզմի և* III *Ինտերնացիոնալի տիրապետության դարագլուխը*»24)։

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Հեղափոխությունը ջախջախեց ազգային ճնշման շղթաները, ստեղծեց ժողովուրդների խսկական յեղբայրական համագործակցություն, հզոր բազմազգ պետություն — ԽՍՀՄ-ը։ Ծաղկում է ԽՍՀՄ ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Հաղթանակեց լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը։ Աշխատավոր մասսաները թոթափելով ճնշ-*

*24) Ի ՍՏԱԼԻՆ, «Լենինիզմի հարցերը», էջ 209, 10-րդ հրատ.։*



*ման լուծը և թուչելով դեպի նոր, ազատ կյանք, իրենց սրտի ամբողջ հուրը ներդնում են սոցիալիզմի շինարարության մեջ։*

* * *

*Հպարտությամբ ու հրճվանքով է դիմավորում խորհրդային ժողովուրդը ԽՍՀՄ Սոցիալիստական մեծ հեղափոխության* 20-*րդ տարեդարձը։*

*Մեծ, հերոսական ու պանծալի ուղի յեն անցել այս յերկու տասնամյակի ընթացքում բանվոր դասակարգը և գյուղացիության աշխատավոր մասսաները՝ Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ։ Բանվոր դասակարգի ու չքավոր գյուղացիության հերոսական պայքարը, վոր ծավալվել եր* 1917 *թվականի հեղափոխության մեջ, ավարտվեց շահագործող դասակարգերի լիակատար ջախջախումով և սոցիալիզմի վերջնական հաղթությամբ ԽՍՀՄ ժողովրդական տնտեսության բոլոր սփերաներում։*

*Բանվոր դասակարգի դիկտատուրան հետամնաց, ագրարային, իմպերիալիզմից*

կախման մեջ գտնվող ցարական Ռուսաստանը դարձրեց ծաղկող, անկախ, հզոր սոցիալիստական ինդուստրիալ պետություն՝ բարձր զարգացած ծանր արդյունաբերությամբ ու մեքենաշինությամբ, վորոնք հագեցված են ամենահարուստ, առաջավոր տեխնիկայով:

Լենին-Ստալինի կուսակցությունը լուծեց պրոլետարական հեղափոխության ամենաբարդ խնդիրը—աշխատավոր գյուղացիության բազմամիլիոն մասսաների սոցիալիզմի ռելսերի վրա փոխադրելու խնդիրը: Ստեղծված է հզոր կոլտնտեսային կարգ— աշխարհում ամենախոշոր, ամենաառաջավոր տեխնիկայով զինված սոցիալիստական գյուղատնտեսություն: Ստալինյան Սահմանադրությունը ձրի ու անժամկետ ոգտագործման համար, այսինքն առհավետ, կոլտնտեսություններին ամրացրեց նրանց զբաղեցրած հողը:

Սոցիալիզմի այս հաղթանակներին համապատասխան, մեր յերկրում փոխվեց նաև հասարակության դասակարգային կառուց-



վածքը: Մեզ մոտ լիկվիդացիայի յեն յենթարկված չահագործող դասակարգերը: ԽՍՀՄ-ում հասարակությունը կազմված է միմյանց հետ համերաշխ յերկու դասակարգերից—բանվորներից և գյուղացիներից: Մեր խորհրդային բանվոր դասակարգը, մեր խորհրդային գյուղացիությունը—այդ միանգամայն նոր բանվոր դասակարգ է և միանգամայն նոր գյուղացիություն, վորոնց նմանը դեռ չգիտե մարդկության պատմությունը: Միանգամայն նոր է նաև մեր խորհրդային աշխատավոր ինտելիգենցիան: Չափազանց կարևոր է նաև այն, վոր սահմանը բանվոր դասակարգի ու գյուղացիության միջև, ինչպես նաև այդ դասակարգերի ու ինտելիգենցիայի միջև, ջնջվում է: Վերանում ու ջնջվում են նրանց միջև յեղած թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական հակասությունները:

Բանվոր դասակարգի դիկտատուրան ստեղծեց հրճվալի, ունևոր, սոցիալիստական կյանք: Սոցիալիզմը ԽՍՀՄ-ում հաղթանակեց անդառնալիորեն ու վերջնականապես: Բայց այդ հաղթանակներն ինքնահո-

սով չեն յեկել. Լենինի–Ստալինի կուսակցությունը սոցիալիզմի այդ հաղթանակները կազմակերպել և պաշտպանել է ժողովրդի ամենավոխերիմ թշնամիների դեմ—տրոցկիստների, զինովյեվականների, կապիտալիզմի աջ ռեստավրատորների դեմ մղվող կատաղի պայքարում: Ժողովրդի այդ վոխերիմ թշնամիները—ֆաշիզմի գործակալները, դիվերսանտները, մարդասպաններն ու վնասարարները փորձում եյին բանվորներից ու գյուղացիներից խլել սոցիալիզմի մեծ նվաճումները, խլել յերջանիկ ու հրճվալից կյանքը: Նրանք ձգտում եյին վոչնչացնել բանվորների ու գյուղացիների իշխանությունը, վերականգնել կալվածատերերի ու կապիտալիստների դիկտատուրան և մեր ազատ խորհրդային ժողովուրդը հոշոտման հանձնել արյունարբու ֆաշիստական դիկտատուրային:

Բայց թշնամիների հաշիվները սխալ դուրս յեկան: Խորհրդային հետախուզությունը՝ հավատարիմ ստալինյան ընկ. Ն. Ի. Յեժովի գլխավորությամբ ջախջախեց ֆաշիզմի տրոցկիստական—աջ գործակալների



ոձի բները: Բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ, նրա Կենտրոնական Կոմիտեյի ու մեծ Ստալինի գլխավորությամբ մեր յերկրի աշխատավոր մասսաները նորանոր հաղթանակներ են ձեռք բերում կոմունիզմի համար մղվող պայքարում: Չկա այնպիսի ուժ, վորը կարողանա կանգնեցնել սոցիալիզմի յերկրի հաղթական յերթը դեպի կոմունիզմի բարձունքները:

Լենինը և Ստալինը ստեղծեցին մեծագույն պատմական ուժ—նոր տիպի կուսակցություն, բոլշևիկների կուսակցություն, վորն իր շարքերում չի հանդուրժում ոպորտունիզմի վորևե տարր, վորևե տատանում ու թեքում: Այդ կուսակցությունը չի կարելի ջախջախել, նրան չի կարելի ստիպել շեղվելու Մարքսի, Ենգելսի, Լենինի և Ստալինի նշած ուղուց: Լենինի–Ստալինի կուսակցությունն է՛լ ավելի անմիջականորեն, քան յերբևիցե, դարձել է ամբողջ խորհրդային ժողովրդի ձգտումների ու շահերի կրողը: Լենինի–Ստալինի կուսակցության ղեկավար դերն ամրապնդված է մեր յերկրի Հիմնական Որենքի—սոցիալիզմի

Ստալինյան Սահմանադրության—մեջ։

Սոցիալիզմի համաշխարհային – պատմական հաղթանակները, որ մեր երկրի աշխատավորները նվաճել են Լենինի–Ստալինի կուսակցության ղեկավարությամբ, իրենց ամենապայծառ արտահայտությունը գտան Ստալինյան Սահմանադրության, հաղթանակած սոցիալիզմի Սահմանադրության մեջ։

Սոցիալիզմի մեծ երկիրը թևակոխել է նոր դարաշրջան, մինչև վերջ ծավալված սոցիալիստական դեմոկրատիզմի դարաշրջանը։ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի և աշխատավորների պատգամավորների տեղական խորհուրդների առաջիկա ընտրությունները՝ նոր, իսկական դեմոկրատական ընտրական սիստեմի հիման վրա, ե՛լ ավելի սերտորեն կհամախմբեն խորհրդային երկրի ժողովուրդներին բոլշևիկյան կուսակցության շուրջը, սիրելի առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի շուրջը, կոմունիզմի ճանապարհին հետագա հաղթանակներ նվաճելու համար։



# ԽՍՀՄ-Ը ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 20-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ

(Սոցիալիզմի հաղթանակի փաստեր և թվեր)

Դեպի իրենց հայրենիքն անսահման սերը և սոցիալիզմի համաշխարհային–պատմական հաղթանակների համար մեծագույն պարծանքի զգացմունքով, դասակարգային թշնամիների դեմ մղած մարտերում կոփված՝ մեր Լենինի–Ստալինի պանծալի կուսակցության նկատմամբ անձնազոհ նվիրվածության զգացմունքով, դեպի սոցիալիստական հեղափոխության առաջնորդ ու հանճար՝ ընկեր Ստալինն ունեցած անսահման սիրո ու նվիրվածության զգացմունքով են մեր հայրենիքի ժողովուրդները դիմավորում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 20–ամյակը։

«... Սոցիալիզմը ԽՍՀՄ համար այն է, ինչ արդեն ձեռք է բերված և նվաճված է» (Ի. Ստալին)։

Այս համաշխարհային-պատմական հաղթանակները ԽՍՀՄ ժողովուրդները ձեռք են բերել սոցիալիզմի վոխերիմ թշնամիների դեմ մղած ամենադաժան պայքարում։ Տրոցկիստական-բուխարինյան և այլ լըրտեսների, մարդասպանների ու վնասարարների վոհմակը, նենգ, մարդկային կերպարանքը կորցրած, ֆաշիզմին վաճառված բանդան վոչ մի հենարան չունենալով ժողովրդական մասսաների մեջ, ուզում էր ֆաշիստական սվինների ոգնությամբ վերականգնել կապիտալիստների, կալվածատերերի ու կուլակների իշխանությունը, մեր հայրենիքը հոշոտման հանձնել ֆաշիստական շներին, խորհրդային ժողովրդին շըղթայել նրա (խորհրդային ժողովրդի) կողմից թոթափված կապիտալիստական, կալվածատիրական ու կուլակային ստրկության շղթաներով։



Այդ բանը չհաջողվեց։ Խորհրդային ժողովրդի թշնամիների լրտեսական բները ջախջախված են և նրանց ճեղքերի մեջ թաքնված յուրաքանչյուր ֆաշիստական բանդիտ անողոքաբար կվոչնչացվի։

ԽՍՀՄ ժողովուրդներն էլ ավելի սերտորեն համախմբվեցին կոմունիստական կուսակցության շուրջը, իրենց բարեկամ, առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի շուրջը, լի վճռականությամբ առաջ գնալու դեպի կոմունիստական հասարակության լուսաշող բարձունքները։

ԽՍՀՄ ժողովուրդները հրճվալից նախապատրաստվում են ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի՝ Ստալինյան Սահմանադրության հիման վրա կատարվելիք ընտրություններին։ Ստալինյան Սահմանադրությունը կապիտալիստական յերկիրների աշխատավորների համար հանդիսանալով նրանց գործողությունների ծրագիր, ԽՍՀՄ ժողովուրդների համար ունի հանուն սոցիալիզմի նրանց մղած քսանամյա պայքարի

համրագումարի նշանակություն։

Ահա Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի հրճվալից, համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող փաստերը։

## ԽՍՀՄ-Ը ՀԱՂԹԱՆԱԿԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՅԵՐԿԻՐ Ե

Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ մեր հայրենիքի բանվոր դասակարգն ու բոլոր աշխատավորներն արմատապես փոխեցին յերկրի տնտեսական ու սոցիալական կառուցվածքը, յերկիր, վորը գրավում ե յերկրագնդի մեկ վեցերորդական մասը։ Կապիտալիստական հասարակակարգը, արտադրության կապիտալիստական յեղանակը վերացված են։ Գործնականում իրականացվեց մարդկության լավագույն մտքերի յերազը—ստեղծված ե նոր, սոցիալիստական հասարակակարգ, ստեղծված ե նոր, սոցիալիստական տնտեսություն։ Այդ, հրավառ տառերով



գրի յե առնված հաղթանակած սոցիալիզմի մեծ խարտիայի մեջ—Ստալինյան Սահմանադրության մեջ։

«ԽՍՀՄ-ի տնտեսական հիմքն են կազմում տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը, վորոնք հաստատվել են տնտեսության կապիտալիստական սիստեմի լիկվիդացիայի, արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության վերացման և մարդու կողմից մարդու շահագործումը վոչնչացնելու հետևանքով». (ԽՍՀՄ Սահմանադրության (Հիմնական Օրենքի) 4-րդ հոդվածը)։

Ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ անբաժանելիորեն տիրապետում է արտադրության սոցիալիստական յեղանակը։ Բոլոր շահագործող դասակարգերը լիկվիդացիայի յեն յենթարկված։

«Կալվածատերերի դասակարգը, ինչպես հայտնի յե, արդեն վերացված եր քա-

ղաքացիական պատերազմի հաղթական ավարտման հետևանքով։ Ինչ վերաբերում է մյուս շահագործող դասակարգերին, ապա նրանց էլ բաժին ընկավ կալվածատերերի դասակարգի բախտը։ Չկա այլևս կապիտալիստների դասակարգն արդյունաբերության բնագավառում։ Չկա այլևս կուլակների դասակարգը գյուղատնտեսության բնագավառում։ Չկան այլևս վաճառականներն ու սպեկուլյանտներն ապրանքաշրջանառության բնագավառում։ Այդպիսով բոլոր շահագործող դասակարգերը վերացվեցին» (Ի. Ստալին)։

Բնակչության դասակարգային կազմը մինչև հեղափոխությունը բաշխվում էր այսպես. բանվորները և գյուղացիները կազմում էին ամբողջ բնակչության 16,7 տոկոսը, մանր սեփականատերերը՝ գյուղացիները, տնայնագործները, արհեստավորները—65,1 տոկոսը, բուրժուազիան՝ կապիտալիստները, կալվածատերերը, առևտրականները, կուլակները—15,9 տոկոսը, մնացած



բնակչությունը՝ ուսանողները, բանակը թոշակառուները—2,3 տոկոսը։ ԽՍՀՄ բնակչությունը բաշխվում է այսպես— բանվորներն ու ծառայողները կազմում են բնակչության 34,7 տոկոսը, մանր սեփականատերերը՝ մենատնտես գյուղացիները և արտելներում չգտնվող տնայնագործներն ու արհեստավորները՝ 5,6 տոկոսը, կոլտնտեսականները և կոոպերացված տնայնագործներն ու արհեստավորները՝ 55,5 տոկոսը մնացած բնակչությունը՝ ուսանողները բանակը, թոշակառուները՝ 4,2 տոկոսը։

«Մեր հասարակությունը կազմված է բացառապես քաղաքի և գյուղի ազատ աշխատավորներից — բանվորներից, գյուղացիներից, ինտելիգենցիայից» (Ի. Ստալին)

## ԽՍՀՄ-Ը ՀԶՈՐ ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ Է

Հետամնաց, ագրարային յերկրից ԽՍՀ Միությունը դարձավ հզոր ինդուստրիա

պետություն: Մեր արդյունաբերությունն այժմ հիմնվում ե նոր, ժամանակակից հարուստ տեխնիկայի վրա, ուժեղ զարգացած ծանր ինդուստրիայով և ե՛լ ավելի զարգացած մեքենաշինությամբ» (Ի. Ստալին):

Քսան տարվա ընթացքում մեր յերկիրը վիթխարի միջոցներ ե ներդրել արդյունաբերության կապիտալ շինարարության մեջ:

Բոլորովին նոր ստեղծված ե տեխնիկական բազա, վորի հիման վրա մեր յերկիրը հետամնաց ագրարային յերկրից դարձավ առաջավոր ինդուստրիալ պետություն: Բոլորովին նոր ստեղծված ե ծանր արդյունաբերությունը, վորն ամբողջ ժողովրդական տնտեսության վերակառուցման բանալին ե հանդիսանում:

Ամբողջ արդյունաբերական արտադրանքի յերեք քառորդ մաս այժմ տալիս են խորհրդային իշխանության որով կառուցված գործարաններն ու ֆաբրիկաները:

1913 թվականին արդյունաբերությունը



տալիս եր ամբողջ արտադրանքի 42,1 տոկոսը, գյուղատնտեսությունը՝ 57,9 տոկոսը, այժմ արդյունաբերությունն արտադրում ե 77,4 տոկոս, իսկ գյուղատնտեսությունը՝ 22,6 տոկոս:

Արդյունաբերական արտադրանքի աճման մասշտաբը ԽՍՀՄ-ում վիթխարի յե:

Արդեն առ 1-ն ապրիլի 1937 թվականի ԽՍՀՄ արդյունաբերությունը համախառն արտադրանքի տեսակետից կատարեց յերկրորդ հնգամյա պլանի առաջադրանքը: 1937 թվականին ԽՍՀՄ արդյունաբերությունն ըստ պլանի պետք ե տա 103 միլիարդ ռուբլու արտադրանք, այսինքն՝ 10 անգամ ավելի, քան մինչև պատերազմը (1913 թվականը) և 15 անգամ ավելի, քան մինչև հեղափոխությունը (1917 թվականը):

Հատկապես արագ տեմպով ե զարգացել մեր ծանր արդյունաբերությունը—սոցիալիզմի նյութական բազան:

«Հարկավոր եր ստեղծել առաջնակարգ ինդուստրիա: Հարկավոր եր այդ ինդուս-

*տրխային այնպիսի ուղղություն տալ, վոր նա ընդունակ լիներ տեխնիկապես վերակառուցելու վոչ միայն արդյունաբերությունը, այլև գյուղատնտեսությունը, այլև մեր յերկաթուղային տրանսպորտը»* (Ի. Ստալին):

## ԻՆԴՈՒՍՏՐԱՑՄԱՆ ՀԶՈՐ ՀԻՄՔԸ

«Մենք չունեյինք սև մետալուրգիա, յերկրի ինդուստրացման հիմքը: Այժմ մենք ունենք այն» (Ի. Ստալին):

*Քսան տարվա ընթացքում մեր յերկրում ստեղծված է խոշորագույն մետալուրգիական արդյունաբերություն: Կառուցված են մետալուրգիական հզոր կոմբինատներ, ինչպես օրինակ՝ Մագնիտոգորսկի, Կուզնեցկի կոմբինատները և այլն:*

Չուգունի յեվ պողպատի ձուլումը
(հազար տոններով)

| | 1913 թ. | 1917 թ. | 1927-28 թ. | 1932 թ. | 1936 թ. |
|---|---|---|---|---|---|
| *Չուգուն՝* | 4216,1 | 2964,1 | 3282,3 | 6161,1 | 14.400 |
| *Պողպատ՝* | 4231,0 | 3079,6 | 4250,9 | 5927,1 | 16.400 |



*ԽՍՀՄ-ը չուգունի արտադրությամբ առաջին տեղն բռնեց Յեվրոպայում:*

*Սև մետալուրգիայի միայն յերեք հըսկաներ Մագնիտոգորսկի, Կուզնեցկի և Մակեյեվկայի գործարանները—1936 թվականին ձուլել են այնքան չուգուն, վորքան տալիս եր հին Ռուսաստանի ամբողջ մետալուրգիական արդյունաբերությունը:*

*«Մենք ունեյինք միայն մեկ՝ միակ ածխա-մետալուրգիական բազա՝—Ուկրաինայում, վորը մենք դժվարությամբ եյինք կառավարում: Մենք հասանք այն բանին, վոր վոչ միայն բարձրացրինք այդ բազան, այլև ստեղծեցինք Արևելքում մի նոր ածխա-մետալուրգիական բազա, վորը մեր յերկրի պարծանքն է հանդիսանում»*: (Ի. Ստալին):

## ՔԱՐԱԾՈՒԽ ՅԵՎ ՆԱՎԹ

«Նավթամթերքների և քարածխի արտադրության իմաստով մենք կանգնած եյինք վերջին տեղում: Այժմ մենք առաջ ենք ան-

ցել առաջին տեղերից մեկում» (Ի. Ստալին)։

Վիթխարի չափով աճել է մեր երկրում ածխարդյունաբերությունը։ Յուրացված են ածխային նոր շրջաններ, շահագործման են հանձնված շատ տասնյակ նոր, հզոր հանքեր։

Նախահեղափոխական Ռուսաստանում ածխարդյունաբերության մեջ համարյա չի եղել ոչ մի մեքենայացում։ ԽՍՀՄ-ում ածխի հանույթն ուժեղ չափով մեքենայացված է. ԽՍՀՄ այս տեսակետից առաջին տեղն է գրավում աշխարհում։ Եթե առաջին հնգամյակի սկզբին ածխարդյունաբերության մեջ կար ընդամենը միայն 70 հանքահատ մուրճ, ապա արդեն երկրորդ հնգամյակի սկզբին ածխարդյունաբերության մեջ դրանց թիվը տասը հազարից ավելի էր, իսկ վերջին երկու տարվա ընթացքում մեր արդյունաբերությունն ածխահանքերի համար պատրաստել է ավելի քան 17 հազար հանքահատ մուրճ։



Ածխի հանույթը 1936 թվականին՝ 1913 թվականի համեմատությամբ աճել էր 4,3 անգամ։

Ածխի հանույթը (միլիոն տոններով)

| | 1913 թ. | 1927–28 թ. | 1932 թ. | 1936 թ. | 1937 թ. (ըստ պլանի) |
|---|---|---|---|---|---|
| Ընդամենը՝ | 29,1 | 35,5 | 64,7 | 126,4 | 150,2 |

Տարեց-տարի աճում է նաև նավթի հանույթը, որը 1913 թվականի համեմատությամբ ավելացել է ավելի քան երեք անգամ։

Նավթի և գազի հանույթը
(հազար տոններով)

| 1913 թ. | 1927–28 թ. | 1932 թ. | 1936 թ. |
|---|---|---|---|
| 9234,1 | 11749,2 | 22318,7 | 29293,3 |

1913 թվականին ընդամենը փորված է եղել 276,6 հազար մետր նավթահոր, իսկ 1935 թվականին փորվել է արդեն 1501,5 հազար մետր։ Ըստ 1937 թվականի պլանի պետք է փորվի 2800 հազար մետր և շահագործման պետք է հանձնվի 2100 նոր նավթահոր։

Անհամեմատ աճել է ԽՍՀՄ ածխայի
ու նավթարդյունաբերության տեխնիկակա
հագեցվածությունը:

Բանվոր դասակարգի պարծանքը հան-
դիսացող Դոնբասի հանքափորները նվաճե
են ածխարդյունաբերության մեջ աշխա
տանքի արտադրողականության համաշխար
հային ռեկորդներ: Ծավալելով սոցիալիս-
տական մրցությունը, նրանք ձեռք են բե
րում արտադրական նոր հաղթանակներ:

Սակայն ածխի ու նավթի արդյունաբե
րությունն առայժմ հետ է մնում պետա
կան ու ժողովրդատնտեսական պլաններ
կատարման ասպարեզում: Իսկ ածուխ
նավթ ավելի ու ավելի մեծ քանակությամ
են հարկավոր սոցիալիստական յերկրի
նրա վիթխարի արդյունաբերությանը, յեր
կաթուղային տրանսպորտին, նավատորմի
ղին, ելեկտրոկայաններին:

Ֆաշիզմի տրոցկիստական-բուխարի
նյան գործակալները ձգտելով քայքայ
մեր ժողովրդական տնտեսությունը, վնա



սարարություն էյին անում և վնաս էյ
հասցնում ածխի, նավթի ու վառելիքայ
տնտեսության մյուս ճյուղերում: Տրոցկիս
տական-բուխարինյան վնասարարությա
հետևանքների արագ վերացումն այն կա
րևորագույն խնդիրներից մեկն է, վոր դրե
ՀամԿ(բ)Կ Կենտկոմի փետրվար-մարտյա
պլենումը:

ԽՍՀՄ Ժողկոմխորհը և ՀամԿ(բ)
Կենտկոմը Դոնբասի վերաբերյալ իրեն
ապրիլյան վորոշման մեջ մատնանշեցին, թ
ինչպես պետք է կարգ ու կանոն հաստատե
ածխարդյունաբերության մեջ, ինչպե
պետք է նոր հզոր վերելքի հասնել ածխ
հանույթի և նավթի արտադրության աս-
պարեզում: Բայց մինչև վերջին ժամանակ
ներս վնասարարության հետևանքների վե-
րացումը ածխարդյունաբերության մեջ ըն-
թանում էր ծայրահեղորեն դանդաղ, խ
թշնամիները չարունակում էյին կատարե
իրենց լկտի գործը, ճարպկորեն ոգտագոր-
ծելով սահմանականների ու նվազագույն-

նականների նեխած «թեորիաները», վորոնք քիչ չէյին մեր դոնեցի անտեսվարների մեջ:

Այժմ ստալինյան ժողկոմ ընկ. Լ. Մ. Կագանովիչը բոլշևիկյան կարգ ու կանոն է հաստատում ածխարդյունաբերության մեջ, ջախջախելով սահմանականներին, բյուրոկրատներին, կանցելյարիստներին, առաջ քաշելով նոր, յերիտասարդ, ընդունակ, Լենինի–Ստալինի կուսակցությանը անսահմանորեն նվիրված կադրեր: Կասկածից վեր է, վոր Դոնբասի պանծալի հանքափորները ընկ. Լ. Մ. Կագանովիչի ղեկավարությամբ, մերկացնելով և վոչնչացնելով խորհրդային ժողովրդի թշնամիներին, հասնելով վնասարարության հետևանքների ամենաարագ վերացման, ե՛լ ավելի լայնորեն կծավալեն ստախանովյան շարժումը, կբարձրացնեն ածխի հանույթը և ամբողջ Խորհրդային Միության ածխահատներին իրենց հետևից կտանեն դեպի նորանոր հաղթանակներ:



## ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՅԵՐԿԻՐԸ

«Էլեկտրական եներգիայի արտադրության իմաստով մենք կանգնած էյինք ամենավերջին տեղում: Այժմ մենք առաջ ենք անցել առաջին տեղերից մեկում» (Ի. Ստալին):

Լենինի և Ստալինի ղեկավարությամբ մշակված ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հեռանկարային պլանը—ԳՈԷԼՌՈ-ի պլանը,—վորը նախատեսնված էր 10—15 տարվա համար, 1935 թվականին, այսինքն իր տասնհինգամյակին, շրջանային էլեկտրոկայանների կարողության տեսակետից գերակատարվել էր 2,5 անգամ: 1936 թվականը հավերժացավ ԽՍՀՄ ժողովրդական տնտեսության եներգետիկ բազայի հետագա աճմամբ:

Էլեկտրոկայանների կարողությունը, վոր 1936 թվականին կազմում էր 7,5 միլիոն կիլովատ, 1913 թվականի համեմատությամբ աճեց 6,8 անգամ, իսկ էլեկ-

տրական եներգիայի մշակությունը՝ 17,3 անգամ (32,8 միլիարդ կիլովատ ժամ)։

Առաջին հնգամյակի սկզբին ԽՍՀՄ-ում չկային հարյուր հազար կիլովատից բարձր կարողություն ունեցող ելեկտրոկայաններ։ Այժմ այդպիսի ելեկտրոկայանները տալիս են շրջանային կայաններում մշակվող ամբողջ եներգիայի կես մասից ավելին։

Հենց միայն Դնեպրի ելեկտրոկայանը 1936 թվականին արտադրել ե ավելի ելեկտրոեներգիա, քան ամբողջ ցարական Ռուսաստանը։

## ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅՈՒՆ

Ցարական Ռուսաստանի բոլոր մեքենաշինական գործարանների արտադրանքը 1913 թվականին՝ 1926/27 թվականի գներով կազմում եր 748 միլիոն ռուբլի, իսկ 1936 թվականին ԽՍՀՄ մեքենաշինությունը դազգյահներ ու մեքենաներ արտադրել ե 20 միլիարդ 764 միլիոն ռուբլու—աճում 28 անգամ։ 1913 թվականից մինչև 1936 թվականը



յեղած ժամանակամիջոցում մետալուրգիական դազգյահների արտադրությունն ավելացել ե 31 անգամ, շոգետուրբինների արտադրությունը՝ 106 անգամ, շոգեկաթսաներինը՝ 9,5 անգամ, դիզելներինը՝ 6 անգամ, ապրանքատար վագոններինը՝ 5,3 անգամ։

Կոմբայնների արտադրության յերկրորդ հնգամյակն արդեն 1936 թվականին գերակատարվեց յերկու անգամ։ ԽՍՀՄ կոմբայններ արտադրում ե 2,5 անգամ ավելի, քան կապիտալիզմի բոլոր յերկրները միասին վերցրած, իսկ տրակտորներ՝ ամբողջ կապիտալիստական աշխարհի արտադրածի չորս հինգերորդական մասից ել ավելի։

1937 թվականին արտադրվելու յե («Ե» և «Սու»՝ պայմանական) 1900 շոգեքարշ, ապրանքատար վագոններ ու ցիստերններ (4 սռնանի)—42500, մարդատար վագոններ —1500, ավտոմոբիլներ—220 հազար, կոմբայններ—55 հազար և այլն։

Մեքենաշինության արտադրանքը ԽՍՀ

Միությունում 1936 թվականին՝ 1928 թվականի արտադրանքի համեմատությամբ, վորը մենք ընդունում ենք իբրև 100 տոկոս, կազմում էր արդեն 1268 տոկոս, մինչդեռ ԱՄՆ-ում (դազգյահների նոր պատվերներ) այդ կազմում էր 104,1%, Անգլիայում (ներառյալ նավաշինությունը)—129,7%, Գերմանիայում (մեքենաների վաճառք)—98,3% և Ֆրանսիայում (ներառյալ նավաշինությունը) 72,5%:

## ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

«Մենք չունեյինք լուրջ և ժամանակակից քիմիական արդյունաբերություն: Այժմ մենք ունենք այն» (Ի. Ստալին):

*Ստալինյան հնգամյակների տարիներին վիթխարի չափով աճեց քիմիական արդյունաբերությունը: Շահագործման են հանձնըվել տասնյակ նոր քիմիական գործարաններ, այդ թվում այնպիսի հսկաներ, ինչպես Ստալինոգորսկի, Բերեզնիկովի, Կեմերովոյի, Վոսկրեսենսկի, Նևսկիյ, Գորլով-*



*կի և այլ քիմիական կոմբինատներ: Ստեղծված են մի շարք քիմիական արտադրություններ, վորոնց մասին բնավ գաղափար չուներ ցարական Ռուսաստանը: Այժմ մեր յերկիրն արտադրում է հարյուր հազարավոր տոնն պարարտանյութեր, քիմիկատներ, պրեպարատներ: Ստեղծված և յուրացված է արհեստական կաուչուկի արտադրությունը:*

## ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

*Կապիտալիզմը մասսաներին դատապարտում է աղքատիկ, կիսաքաղց գոյության, աշխատավորները ստիպված են վատ սնվել, վատ հագնվել, ապրել սարսափելի պայմաններում:*

*Բոլշևիկների կուսակցությունն ու խորհրդային կառավարությունը զարգացնելով թեթև, սննդի և արդյունաբերության այլ ճյուղերը, հետապնդում են միակ նպատակ — բարձրացնել ժողովրդի բարեկեցությունը, ավելի շատ ու ավելի լավ բավա-*

բարել աշխատավորների բոլոր պահանջները, խորհրդային ժողովրդին տալ սննդի ու լայն սպառման լավ, բարձրորակ մթերքներ, այդ այն ժամանակ, երբ մթերքների ու ապրանքների արտադրությունը կապիտալիստական երկրներում կապիտալիստները կատարում են բացառապես վաստակի նպատակով:

Խորհրդային իշխանության տարիների ընթացքում ստեղծված են թեթև արդյունաբերության նոր, խոշոր ճյուղեր՝ արհեստական մետաքսի, տրիկոտաժի, գործվածքեղենի, կաշվե սուրոգատների արտադրությունը, լայն զարգացում է ստացել կաշվի-կոշկեղենի արտադրությունը և այլն: Կառուցված են տասնյակ խոշորագույն տեքստիլ ու տրիկոտաժի գործարաններ, կաշվի ու կոշկեղենի գործարաններ, օրինակ՝ Ստալինի անվան տեքստիլ կոմբինատը՝ Տաշքենդում, Արևմտասիբիրյան տեքստիլ գործարանը՝ Բառնաուլում, Ձերժինսկու անվան մանվածքային-գործված–



քային ֆաբրիկան՝ Ֆերղանում, մելանժի կոմբինատը՝ Իվանովո քաղաքում, «Պարիժսկայա Կոմունա» և «Բուրևեստնիկ» կոշկեղենի ֆաբրիկաները՝ Մոսկվայում, «Պրոլետարսկայա Պոբեդա» Լենինգրադում և այլն:

Հսկայական չափերով ավելացել է գործվածքեղենի, կոշկեղենի և թեթև արդյունաբերության արտադրանքի մյուս բոլոր տեսակների արտադրությունը: 1917 թվականին արտադրված է յեղել 7,2 միլիոն զույգ կաշվե կոշկեղեն, իսկ 1937 թվականին այդպիսի կոշկեղեն արտադրվում է 170 միլիոն զույգ: Կրկնակոշիկների արտադրությունը համապատասխանորեն աճել է՝ 17,4 միլիոն զույգից հասնելով մինչև 69 միլիոն զույգի: Կարի արդյունաբերության արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ 14 միլիոն ռուբլուց աճել է, հասնելով մինչև 2598 միլիոն ռուբլու, այսինքն 186 անգամ:

Սակայն թեթև արդյունաբերությունը

դեռ չի կարողանում կատարել իր առաջ դրված խնդիրը։ Նա հետ է մնում 1937 թվականի պլանի կատարման ասպարեզում, թե՛ քանակապես և թե՛ վորակապես։ Հատկապես վատ է աշխատում թեթև արդյունաբերության առաջատար ճյուղը՝ բամբակե գործվածքեղենի արդյունաբերությունը։ Թեթև արդյունաբերության բոլոր կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկների խնդիրն է՝ հասնել 1937 թվականի պլանի կատարման ու գերակատարման թե՛ քանակապես և թե՛ վորակապես։

## ՍՆՆԴԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Սննդի արդյունաբերության ճյուղերի մեծ մասը, բացառությամբ միայն շաքարի-շաքարավազի և սպիրտ-օղու արտադրության ճյուղերի, մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխությունը Ռուսաստանում յեղել են իր տեխնիկայի տեսակետից չափազանց հետամնաց և ավելի շատ հանդիսանում էր արհեստագործական



քան թե մեքենային, ինդուստրիալ ֆաբրիկա-գործարանային արտադրություն։ Հիշենք մեծ գրող Մ. Գորկու «Քսանվեց և մեկ» պատմվածքը, վորտեղ նա խոսում է հացթուխ բանվորների սարսափելի շահագործման, նրանց տանջալից, տաժանակիր աշխատանքի մասին։

Այժմ, քսան տարվա ընթացքում, ԽՍՀ Միությունում կառուցված է 300 նոր հացի գործարան, վորոնցից շատերը լրիվ մեքենայացված են։ Կեղտոտ, գարշահոտ սպանդանոցների փոխարեն կառուցվել են 24 խոշոր մսի կոմբինատներ, վորոնցից 7-ը սարքավորված են տեխնիկայի վերջին խոսքով։ Կառուցված են սննդի արդյունաբերության այնպիսի հսկաներ, ինչպես Մոսկվայի՝ Միկոյանի անվան մսի կոմբինատը, Լենինգրադի՝ Կիրովի անվան մսի կոմբինատը, Սեմիպալատինսկի՝ Կալինինի անվան մսի կոմբինատը, Բաքվի մսի կոմբինատը և այլն։

Այդ ձեռնարկությունների կարողու-
թյան մասին խոսում է այսպիսի մի փաստ
1936 թվականին հենց միայն Մոսկվայի
մի կոմբինատը վերամշակել է 54,2 հազա
տոնն յերշիկ, մինչդեռ Ռուսաստանի բոլո
յերշիկի գործարանները միասին 1913 թվա-
կանին վերամշակում եյին 60 հազար տոնն

Ըստ եյության բոլորովին նոր ստեղծ
ված են կոնսերվի արդյունաբերությունը
սառցարանային տնտեսությունը և մի շար
այլ ճյուղեր: Ստեղծված է շոգեքարշ
մոտորային հզոր նավատորմից՝ բաց ծո
վում ձուկ վորսալու համար, կառուցվա
են հատուկ մոտոր-ձկնորսական կայան
ներ, վորոնք ձկնորսական կոլտնտեսու
թյուններում մեքենայանցում են ձկան վո
սը:

Տեխնիկապես վերակառուցված, հա
րուստ և կոլտնտեսային ու խորհտնտես
յին արտադրության աճման հետևանք
գնալով աճող հումքի բազայի վրա հենվ

սննդի արդյունաբերությունը 7 մղոնան
քայլերով առաջ է ընթանում դեպի բար
րորակ, համեղ ու սննդարար սննդամթեր
ների առատության ստեղծումը:

## ՀԱՍՆԵԼ ՅԵՎ ԱՆՑՆԵԼ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱ ՅԵՐԿԻՐՆԵՐԻՑ

Մեծ Ստալինի ղեկավարությամբ մ
յերկիրը ստալինյան հնգամյակի տարին
րին նվաճեց տեխնիկա-տնտեսական անկ
խություն. մեր գործարաններում, մ
սարքավորման միջոցով և մեր նյութ
րից մենք կարող ենք արտադրել ամեն
բարդ մեքենա, ցանկացած քանակությամ

1913 թվականին ցարական Ռուսա
տանն ավտոմոբիլներ չեր արտադրու
ներմուծումը կազմում եր սպառման 1
տոկոսը: 1936 թվականին չնայած տասնյ
անգամ աճած (ցարական Ռուսաստանի հա
մեմատությամբ) սպառմանը, ԽՍՀՄ-ն ա
դեն բոլորովին ավտոմոբիլ չի ներմուծ

արտասահմանից: Տրակտորները, գյուղատնտեսական մեքենաները լրիվին անհայտացել են մեր իմպորտից (ներմուծումից), այնպես, ինչպես և արհեստական պարարտանյութերը, թուղթը, ստվարաթուղթը հեծանիվները:

Ջերոյի յե հավասարեցվել մետաղների ներմուծումը: Մեր յերկիրը լրիվին ազատագրվեց ալյումինի ներմուծումից:

ԽՍՀՄ ժողովրդական տնտեսության արտադրողական ուժերի հուժկու զարգացման հետևանքով, ԽՍՀՄ տեսակարար կշիռը համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ 1928 թվականի 4,6 տոկոսից 1936 թվականին բարձրացավ 20,6 տոկոսի:

Այժմ մեր յերկիրն արդյունաբերության համախառն արտադրանքի չափերով, մեքենաշինությամբ առաջին տեղն է գրավում Յեվրոպայում և յերկրորդ տեղն է գրավում աշխարհում:

Ցարական Ռուսաստանում 1913 թվա-



կանին բնավ չեյին արտադրվում տրակտորներ, կոմբայններ. այժմ ԽՍՀՄ-ը տրակտորների արտադրությամբ յերկրորդ տեղն է գրավում աշխարհում և առաջին տեղը Յեվրոպայում, իսկ կոմբայնների արտադրությամբ՝ առաջին տեղն աշխարհում: 1913 թվականին ելեկտրական եներգիայի արտադրությամբ ցարական Ռուսաստանը 15-րդ տեղն եր գրավում աշխարհում և 7-րդ տեղը Յեվրոպայում: 1936 թվականին ԽՍՀ Միությունը յերրորդ տեղը գրավեց աշխարհում, և յերկրորդ տեղը՝ Յեվրոպայում: Յեվ այդպես արտադրության մի շարք այլ կարևորագույն ճյուղերի գծով:

Այդ նշանակում է, վոր մեր յերկիրը հաջողությամբ լուծում է «տեխնիկա-տնտեսական տեսակետից առաջավոր կապիտալիստական յերկիրներին հասնելու և անցնելու» (Ի. Ստալին) խնդիրը:

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՅԵՐԿՐԻ ՏՐԱՆՍՊՈՐՏԸ

«...ԽՍՀՄ-ը վորպես պետություն պատկերացնել չեր կարելի առանց առաջնա-

կարգ յերկաթուղային տրանսպորտի, վորը կապում է նրա բազմաթիվ մարզերն ու շըրջանները, ստեղծելով միասնական ամբողջություն: Դրա մեջ է ԽՍՀՄ յերկաթուղային տրանսպորտի պետական մեծ նշանակությունը» (Ի. Ստալին):

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության անցած քսան տարվա ընթացքում բանվոր դասակարգը վիթխարի հաջողություններ ձեռք բերեց սոցիալիստական պետության հաղորդակցության ճանապարհների կառուցման գործում: Տրանսպորտը ցարական Ռուսաստանում տնտեսության հետամնաց ճյուղերից մեկն էր: Երկաթուղիների ցանցը կազմում էր 58,5 հազար կիլոմետր: Եվ այդ՝ ամբողջ հսկայական տերիտորիայի համար: Շոգեքարշերի ապրանքային պարկը կազմված էր ընդամենը միայն 13,7 հազար միավորից: Ապրանքատար վագոնների ընդհանուր բեռնատարողությունը կազմում էր 6 միլիոն*



*տոնն: Էլեկտրիֆիկացիայի յենթարկված յերկաթուղիներ բոլորովին չկային:*

*Միանգամայն այլ է դարձել յերկաթուղային տրանսպորտն այժմ. ընկ. Լ. Մ. Կագանովիչի ղեկավարությամբ նա դարձավ ժողովրդական տնտեսության առաջավոր ճյուղը:*

*Խորհրդային իշխանության տարիների ընթացքում յերկաթուղային տրանսպորտի գծերի շահագործման յենթարկվող յերկարությունը 1913 թվականի 58,5 հազար կիլոմետրից աճեց, 1936 թվականին հասնելով 85,0 հազար կիլոմետրի:*

*Նոր յերկաթուղիների յերեք քառորդ մասը կառուցված է ազգային յեղբայրական հանրապետություններում, վորոնք ցարիզմի կողմից հատկապես դաղանային շահագործման էին յենթարկվում և ամենից ավելի էին հետ մնացել տնտեսական զարգացման տեսակետից:*

*Երկրորդ հնգամյակի տարիներին էլեկտրիֆիկացիայի յե յենթարկվել ավելի*

քան 1,5 հազար կիլոմետր ճանապարհ։ Ավտոբլոկիրովկա ունեցող գծերի յերկարությունը կազմում է մոտ 9000 կիլոմետր։

Ապրանքատար շոգեքարշերի պարկի ընդհանուր քաշող ուժը 1913 թվականի 118 հազար տոննից ավելացել է, 1937 թվականին հասնելով 304,5 հազար տոննի, մարդատար պարկինը՝ համապատասխանորեն 24 հազար տոննից հասել է 42,5 հազար տոննի։ Յերկաթուղային տրանսպորտը միայն վերջին տարիների ընթացքում ստացավ մոտ 2000 «Ֆ. Դ.» սերիայի հզոր շոգեքարշ, մոտ 900 «ՍՈ» սերիայի շոգեքարշ և ավելի քան 100 «ԻՍ» սերիայի մարդատար հզոր շոգեքարշեր։

Ապրանքատար վագոնների ընդհանուր բեռնատարողությունը 1916 թվականի 6 միլիոն տոննից աճել է, 1937 թվականին հասնելով 15,7 միլիոն տոննի։ Ապրանքատար վագոնների կեսից ավելին ունեն ավտոմատ արգելակներ։

Յերկաթուղային տրանսպորտը Հոկ-



տեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության 20-րդ տարեդարձը դիմավորում է հսկայական հաջողություններով։ Որական 100 հազար վագոնի բեռնումը, վորը դեռ մեկ տարի սրանից առաջ ռեկորդային եր համարվում, այժմ դառնում է սովորական ու առորյա յերևույթ, իսկ «յերկաթուղայինի որը»—1937 թվականի հուլիսի 30-ին բեռնվեց 119963 վագոն։ Բեռների փոխադրությունն ավելացել է՝ 1913 թվականի 132,4 միլիոն տոննից 1936 թվականին հասնելով 483,2 միլիոն տոննի, այսինքն աճել է 3,7 անգամ, իսկ 1917 թվականի համեմատությամբ՝ 4,3 անգամ։ Ուղևորների փոխադրությունն աճել է՝ 1913 թվականի 184,8 միլիոնից 1933 թվականին հասնելով 1145 միլիոն հոգու, կամ աճում 6,2 անգամ։ Յերկաթուղային տրանսպորտն իր յերկրորդ հնգամյա պլանը կատարեց արդեն 1936 թվականին։ Այդ հաղթանակները յերկաթուղայինները ձեռք են բերել սահմանականների, խորհրդային ժողովրդի վո-

խերիմ թշնամիների—ֆաշիզմի տրոցկիստական, բուխարինյան գործակալների դեմ մղվող համառ պայքարում։

Մեծ հաջողություններ է ձեռք բերել նաև ջրային տրանսպորտը։ Գետային տրանսպորտի բեռների փոխադրությունն աճեց՝ 1913 թվականի 33 միլիոն տոննից 1937 թվականին հասնելով մինչև 80 միլիոն տոննի։ Շահագործման մեջ գտնվող ջրային ճանապարհների յերկարությունը համապատասխանորեն աճեց 72 հազար կիլոմետրից հասնելով մինչև 101,5 հազար կիլոմետրի։ Արհեստական ջրային ճանապարհների յերկարությունը 1913 թվականի 1912 կիլոմետրից աճեց 1937 թվականին հասնելով մինչև 3357,5 կիլոմետրի։ Առաջին հնգամյակում շահագործման հանձնվեց Սպիտակ և Բալթիկ ծովերը միացնող՝ Ստալինի անվան ջրանցքը, 227 կիլոմետր յերկարությամբ։ Յերկրորդ հնգամյակում կառուցվեց մյուս խոշորագույն ջրանցքը՝ Վոլգա—Մոսկվա ջրանցքը, 128 կիլոմետր յերկարությամբ։



Այդ ջրանցքների կառուցման աշխատանքների վիթխարի չափերի մասին խոսում են հետևյալ տվյալները—Մոսկվա-Վոլգա ջրանցքի շինարարության մեջ կատարված հողային աշխատանքների ծավալը կազմում եր 150 միլիոն խորանարդ մետր, բետոնի աշխատանքներինը՝ 3 միլիոն խորանարդ մետր։ Մոսկվա-Վոլգա ջրանցքի կառուցման արժեքն արտահայտվում է հսկայական գումարով—մեկ միլիարդ 800 միլիոն ռուբլի։ Այսպիսի շինարարությունների մասին ցարական կառավարությունը յերբեք չեր էլ յերազում։ Արհեստական ջրային ճանապարհների յերկարությամբ ԽՍՀՄ իր հետևում թողեց Գերմանիան և ԱՄՆ-ը։

Ծովային տրանսպորտի՝ Խորհրդային նավերով կատարվող փոխադրումները յերկու հնգամյակների տարիների ընթացքում աճեցին 1929 թվականի 9 միլիոն տոննից 1937 թվականին հասնելով մինչև 35,5 միլիոն տոննի, այսինքն համարյա վեց ան-

գամ։ Ծովային նավատորմի բեռնատարողությունն այդ տարիների ընթացքում ավելացավ համարյա չորս անգամ։ Եթե 1913 թվականին Հայրենի նավատորմը փոխադրում էր ընդամենը էքսպորտային բեռների միայն 7,6 տոկոսը և իմպորտային բեռների 14,1 տոկոսը, ապա 1937 թվականին խորհրդային նավատորմի մասնակցությունն էքսպորտային բեռների փոխադրության մեջ կկազմի մոտ 43 տոկոս, իսկ իմպորտային բեռների փոխադրության մեջ մոտ 96 տոկոսը։

Երկրորդ հնգամյակի տարիներին բոլշևիկները յուրացրին Հյուսիսային ծովային մեծ ճանապարհը։ Արդեն 1935 թվականին դաժան Արկտիկայի սառը ջրերում լողում էին ավելի քան 100 նավ, փոխադրվեց 204 հազար տոնն բեռ։ Նավագնացության պատմության մեջ առաջին անգամ «Անադիր» և «Ստալինգրադ» սովորական բեռնատար շոգենավերով միջանցուկ ռեյսեր կատարեցին Վլադիվոստոկից Մուրմանսկ, իսկ «Իս-



կրա» և «Վանցետտի» շոգենավերով՝ Մուրմանսկից Վլադիվոստոկ։ 1937 թվականին Հյուսիսային ծովային ճանապարհով արդեն փոխադրված է 270 հազար տոնն բեռ։

Խորհրդային իշխանության տարիներին նոր ստեղծվեց քաղաքացիական օդատորմիղը։ Դեռ 1928 թվականին օդային գծերի յերկարությունը կազմում էր ընդամենը միայն 8,9 հազար կիլոմետր, իսկ 1936 թվականին՝ 110 հազար կիլոմետր։ Քաղաքացիական ավիացիայի փոխադրումների ծավալը հենց միայն յերկրորդ հնգամյակի տարիներին աճեց 8,5 անգամ։

Խորհրդային օդաչուները, վորոնց դաստիարակել են բոլշևիկների կուսակցությունն ու խորհրդային ժողովրդի մեծ առաջնորդ ընկեր Ստալինը, վերջին տարիների ընթացքում քիչ փայլուն էջեր չեն գրել համաշխարհային ավիացիայի զարգացման պատմության մեջ։ Խորհրդային Միության հերոսներ Չկալովի, Բայդուկովի, Բելյակովի, Գրոմովի, Յումաշևի, Դանիլինի,

Վորոպյանովի, Մոլոկովի և մյուսների շլացուցիչ թռիչքներով պարծենում է վոչ միայն մեր խորհրդային ժողովուրդը, այլև ամբողջ առաջավոր ու առաջադեմ մարդկությունը:

## ԽՍՀՄ-Ն ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՄԵՆԱԽՈՇՈՐ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՅԵՐԿԻՐ Ե

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության քսան տարվա ընթացքում արմատապես փոխվեց կարգը, տեխնիկան և կենցաղը ԽՍՀՄ-ի գյուղատնտեսության մեջ:

Մինչև Սոցիալիստական մեծ հեղափոխությունը հողի յերկու յերրորդ մասը գտնվում եր կալվածատերերի, ցարական ընտանիքի, վանքերի ձեռքում, կուլակների ձեռքում և միայն բոլոր հողերի մեկ յերրորդ մասը՝ ու այն ել վատթարագույն հողերն եյին գտնվում չքավորության և միջակների բազմամիլիոն մասսայի ձեռքում,



ավելի քան 150 միլիոն հեկտար նախկին կալվածատիրական, վանքապատկան ու արքունական հողեր: Միանգամայն փոխվեց գյուղի դեմքը, հաղթանակեց սոցիալիստական արտադրությունը հանձին խորհտնտեմասսայի, վորին ճնշում եյին կալվածատիրական շահագործումն ու կուլակային ստրկությունը: Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունն աշխատավոր գյուղացիությանը հանձնեց առաջներում շահագործող դասակարգերի ձեռքում գտնվող հողը: Կոլտնտեսությունները ձրի ու առհավետ ոգտագործման համար ստացան ավելի քան 400 միլիոն հեկտար հող, այդ թվում սությունների և կոլտնտեսությունների, վորոնց բաժինը ԽՍՀՄ գյուղատնտեսության մեջ բնութագրվում է հետևյալ տվյալներով՝

| | 1928 թ. | 1937 թ |
|---|---|---|
| Խորհտնտեսությունների և կոլտնտեսությունների տեսակարար կշիռը ցանքերի ամբողջ տարածության մեջ (տոկոսներով) | 2,3 | 99,2 |

Սոցիալիստական հատվածը գյուղատնտեսության մեջ արդեն տալիս է ամբողջ ապրանքային հացահատիկի 97 տոկոսը։ Այդպիսով, գյուղատնտեսության մեջ ևս սոցիալիզմը հաղթանակեց վերջնականապես ու անդառնալիորեն։

«...Աշխատավոր գյուղացիությունը, մեր խորհրդային գյուղացիությունը վերջնականապես ու անդառնալիորեն կանգնեց սոցիալիզմի կարմիր դրոշի տակ» (Ի. Ստալին)։

ԽՍՀՄ-ում ստեղծված է մոտ 250 հազար կոլտնտեսություն, որոնք ընդգրկում են գյուղացիական տնտեսությունների 93 տոկոսը։

Աշխատավոր գյուղացիությունը վաղուց խեղդվում էր հողազրկությունից, յերազում էր հողի մասին։ Այդ յերազը քսան տարի սրանից առաջ իրականացավ մեր յերկրում։ Այժմ մեր կոլտնտեսային գյուղացիությունը հող ունի առատորեն։ Այդ



հողերը Ստալինյան Սահմանադրությունն ամրացրեց կոլտնտեսություններին ձրի և անժամկետ օգտագործման համար, այսինքըն՝ առհավետ։

Կոմունիստական կուսակցությունը և խորհրդային կառավարությունը կոլտնտեսային գյուղին տվին հարյուր հազարավոր տրակտորներ, կոմբայններ ու այլ կատարելագործված մեքենաներ, որոնք շատ անգամ հեշտացնում են գյուղացու աշխատանքը, շատ անգամ բարձրացնում են նրա արտադրողականությունը և գյուղատնտեսական աշխատանքը վերածում են ինդուստրիալ աշխատանքի մի տարատեսակի։ Մենք արորի յերկիր եյինք—մենք տրակտորի ու կոմբայնի յերկիր դարձանք։

Ահա թե ինչպես է փոխվել գյուղատընտեսության տեխնիկական զինվածությությունը.

## Մեքենաները և գործիքները գյուղատնտեսության մեջ

| | Ցարական Ռուսաստանում, 1910 թվականին | ԽՍՀՄ-ում 1937 թ. |
|---|---|---|
| Արոր, կոտուլյա, սաբան (մլն.) | 8,0 | չկա |
| Ձիաքարշ շարքացաններ (հազ.) | 323,7 | 811,5 |
| Տրակտորներ (հազարներով) | չի եղել | 450,2 |
| Տրակտորային գութաններ (հազ.) | » | 415,1 |
| Տրակտորային շարքացաններ (հազ.) | » | 214,6 |
| Կոմբայններ (հազ.) | » | 121,0 |
| Այդ թվում կոլտնտեսություններում (ՄՏ կայաններում) | » | 96,3 |
| Բարդ և կիսաբարդ կալսիչներ (հազ.) | 19,5 | 126,2 |

Ոչ թե արորն ու կոտուլյան, այլ հարյուր հազարավոր տրակտորները, կոմբայններն ու գյուղատնտեսական այլ մեքենաներն են այժմ կազմում մեր կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների գլխավոր ինվենտարը։

Հատկապես մեծ հաջողություններ է ձեռք բերել խորհուրդների երկիրը ստա-



լինյան հնգամյակների տարիներին գյուղատնտեսության մեջ նոր տեխնիկա ստեղծելու գործում։

Առաջին և երկրորդ ստալինյան հնգամյակների ընթացքում, մինչև 1937 թվականի հունիսի 1-ը, ստեղծվել է 5617 մեքենա-տրակտորային կայան, վորոնք մեքենայացնում են կոլտնտեսություններում բոլոր հիմնական գյուղատնտեսական աշխատանքները։

ՄՏԿայանների տրակտորային պարկի կարողությունը չորս տարի և 8 ամսվա ընթացքում աճեց ավելի քան 6 անգամ։ Ընդամենը առ 1-ն օգոստոսի 1937 թվականի ԽՍՀՄ ամբողջ գյուղատնտեսության մեջ կար 450,2 հազար տրակտոր՝ 8302,8 հազար ձիու ուժ ընդհանուր կարողությամբ, իսկ ՄՏԿայաններում—356,8 հազար տրակտոր՝ 6511,6 հազար ձիու ուժ ընդհանուր կարողությամբ։ Երկրորդ հնգամյա պլանի առաջադրանքը, այն է՝ գյուղատնտեսության մեջ տրակտորային պարկի ընդհանուր

կարողությունը մինչև 1938 թվականի հունվարի մեկը հասցնել 8200 հազար ձիու ուժի—գերակատարվեց արդեն մինչև 1937 թվականի ոգոստոսի 1-ը։

1913 թվականին ամերիկյան «Հոլտ» ֆիրման Ռուսաստան ներմուծեց առաջին կոմբայնը։ Այն ընդունեցին վորպես անգըրովկկիանոսյան զարմանահրաշ մի բան, ցուցադրեցին Կիևի գյուղատնտեսական ցուցահանդեսում և դրանով էլ գործը վերջացավ։ Ցարական Ռուսաստանի բաժան-բաժան, մանր, անհատական գյուղացիական տնտեսության պայմաններում կոմբայնը չգտավ և չեր կարող գտնել գործնական կիրառում։ Միայն խոշոր, սոցիալիստական գյուղատնտեսության պայմաններում կոմբայնը կարողացավ ստանալ լայն գործադրություն։

Խորհրդային իշխանությունը հսկայական մասշտաբով կազմակերպեց կոմբայնների արտադրությունը և դրանք տասնյակ հազարներով առաջ շարժեց դեպի խորհ-



տնտեսությունների ու կոլտնտեսությունների դաշտերը։

1931 թվականին ԽՍՀ Միության ամբողջ գյուղատնտեսության մեջ յեղել է 1700 կոմբայն, 1932 թվականին՝ 6400, 1936 թվականին՝ 50·300, իսկ առ 1-ն ոգոստոսի 1937 թվականի՝ արդեն կար 121 հազար կոմբայն։

Տրակտորների, կոմբայնների և գյուղատնտեսական այլ մեքենաների թվի այսպիսի վիթխարի աճման հետևանքով մեր գյուղատնտեսությունը 1937 թվականին ընդհուպ մոտեցավ բոլոր կարևորագույն ու վճռական գյուղատնտեսական աշխատանքների լրիվին մեքենայացմանը։

1937 թվականին տրակտորներով է կատարված վարնանավարի 82 տոկոսը, ցըրտահերկի մոտ 80 տոկոսը. կոմբայններով է հավաքվում հացահատիկային կուլտուրաների ամբողջ տարածության ավելի քան 40 տոկոսի բերքը (իսկ հարավային հացահատիկային շրջաններում՝ ավելի քան 80

տոկոսինը), արևածաղկի բերքի՝ 89,6 տոկոսը, շաքարի ճակնդեղի փորումը մեքենայացված է 90,2 տոկոսով:

Մեր սոցիալիստական հողագործությունը, կիրառելով առաջավոր ագրոտեխնիկայի բոլոր կանոնները, բերքատվության տեսակետից վաղուց արդեն առաջ է անցել նախահեղափոխական Ռուսաստանից: Ցարական Ռուսաստանում, համաշխարհային իմպերիալիստական պատերազմին նախորդող տասնամյակի ընթացքում, հացահատիկային կուլտուրաների միջին բերքը կազմում էր հեկտարից 7 ցենտներ: Մեզ մոտ, ԽՍՀ Միությունում, 1937 թվականի համար բերքատվության պլանով սահմանված առաջադրանքը՝ հեկտարից 10,4 ցենտներ—գզալիորեն կգերակատարվի:

Հացահատիկային կուլտուրաների ընդհանուր բերքը 1913 թվականին—որն ամենից բարձրն է համարվում ցարիզմի գոյության ամբողջ ժամանակամիջոցում—յեղել է 4880 միլիոն փութ: 1935 թվականին



խորհրդատեսային ու կոլտնտեսային արտադրության հիման վրա հացահատիկային կուլտուրաների ընդհանուր բերքը կազմեց արդեն 5500 միլիոն փութ: Ընկեր Ստալինը հենց այն ժամանակ, առաջավոր կոմբայնավարների ու կոմբայնավարուհիների խորհրդակցությանը խնդիր դրեց մոտակա 3—4 տարվա ընթացքում հացահատիկային կուլտուրաների տարեկան բերքը հասցնել մինչև 7—8 միլիարդ փթի: Այդ խնդիրը հաջողությամբ լուծվում է: Նախնական հաշիվներով այս՝ 1937 թվականին, հացահատիկային կուլտուրաների ընդհանուր բերքը կկազմի ավելի քան 7 միլիարդ փութ:

Մեր յերկիրը վիթխարի հաջողությունների յե հասել տեխնիկական կուլտուրաների զարգացման և թեթև ու սննդի արդյունաբերության համար հումքի սեփական բազա ստեղծելու բնագավառում: Այնպիսի կուլտուրաների լայն զարգացումը, ինչպիսին են բամբակը, վուշը, կանեփի մաղ-

մզուկը, յուղատու կուլտուրաները, շաքարի ճակնդեղը, ԽՍՀՄ-ն ազատում է իմպորտային կախումից և հնարավորություն է տալիս մեր թեթև ու սննդի արդյունաբերությանն ապահովել խորհրդային արտադրության հումքով։

1913 թվականին բամբակի ցանքերի տարածությունը կազմում էր ընդամենը միայն 668 հազար հեկտար, իսկ բամբակի հումքի ընդհանուր բերքը՝ վոչ ավելի 7,4 միլլիոն ցենտներից։ Արդյունաբերությանը հումքով ապահովելու համար ցարական Ռուսաստանն արտասահմանից ներմուծում էր տարեկան 12—13 միլլիոն փութ բամբակ, վորը կազմում էր Ռուսաստանի բամբակե գործվածքեղենի արդյունաբերության բամբակի ընդհանուր սպառման կես մասը։

Կուսակցությունն ու խորհրդային իշխանությունը մեր բամբակագործությունը դուրս բերին հումկու վերելքի ու ծաղկման ճանապարհը։ 1936 թվականին խորհրդային բամբակագործները 2035 հազար հեկտար



տարածությունից յերկրին տվին մոտ 48 միլլիոն փութ բարձրորակ բամբակ, 4 տարվա ընթացքում 12 տոկոսով գերակատարելով յերկրորդ հնգամյա պլանի առաջադրանքը։ Պակաս հաջողություններ ձեռք չի բերի մեր կոլտնտեսային ու խորհտնտեսային բամբակագործությունը նաև 1937 թվականին։ Բամբակի կոլտնտեսային ու խորհտնտեսային պլանտացիաներում բամբակի հարուստ բերք են հավաքում։ Այնպիսի բարձր բերք, ինչպիսին ստանում են մեր բամբակագործ կոլտնտեսականները, չի տեսել աշխարհի վոչ մի յերկիր։

Յերկիրը հավաքում է նաև շաքարի ճակնդեղի հարուստ բերք։ Կոլտնտեսականների ստախանովյան աշխատանքը շլացուցիչ արդյունքներ է տալիս։ Ճակնդեղագործական կոլտնտեսությունների առաջավորները, ինչպես, օրինակ, Ն․Պ․ Ժերնովսկայան, Խարկովի մարզի Վոլչանսկի շրջանի «Խարկովսկի պրոլետարիյ» կոլտնտեսու-

թյունից, հավաքում են հեկտարից հազար ցենտներ շաքարի ճակնդեղ։

Կոլտնտեսային ու խորհտնտեսային կարգի հիման վրա արագ տեմպով աճում և զարգանում է անասնապահությունը։ Այդ մասին պերճախոս կերպով վկայում են հետևյալ փաստերը.

Եթե ցարական Ռուսաստանում յերեք տարվա ընթացքում (1911 թվականից մինչև 1913 թվականը) խոշոր յեղջերավոր անասունների թիվն ավելացած է յեղել մեկ միլիոնով, խոզերի թիվը՝ 1,6 միլիոնով, իսկ վոչխարների թիվը նույնիսկ նվազել եր 3 միլիոնով, ապա յերեք տարվա ընթացքում (1933—34 թվականից մինչև1935—36 թվականը) ԽՍՀՄ-ում խոշոր յեղջերավոր անասունների թվի աճումը կազմում է 18,3 միլիոն, խոզերինը՝ 18,2 միլիոն և վոչխարներինը՝ 23,4 միլիոն։

Անասունների թվի արագ աճման հետ միասին արագորեն բարելավվում են նաև անասնապահության վորակական ցուցանիշ-



ները (միջին կիթը և այլն), վորի հիման վրա յերկրում արագորեն ավելանում է անասնապահական մթերքների քանակությունը։

## ԴԵՊԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՈՒՆՔ-ՆԵՐԸ

Մեր սոցիալիստական շինարարության պատմության ամենապանծալի եջերից մեկը կոմունիստական կուսակցության և ժողովրդի առաջնորդ ընկեր Ստալինի կողմից փայփայված համաժողովրդական ստախանովյան շարժումն է։

Ստախանովյան շարժումն իր մեջ պարունակում է մեր յերկրի բանվոր դասակարգի այնպիսի կուլտուրական-տեխնիկական վերելքի առաջին սաղմերը, վորը քայքայում է մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև յեղած հակադրության հիմքերը, ապահովում է աշխատանքի բարձր

արտադրողականությունը, «պայմաններ է նախապատրաստում սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար» (Ի. Ստալին):

Համաժողովրդական ստախանովյան շարժումը կարող էր ծնունդ առնել և հուժկու թափ ստանալ միայն մեր երկրում, վորտեղ վոչնչացված են կապիտալիստական և բոլոր տեսակի այլ ճնշման ու ստրկության շղթաները: Այն կարող էր զարգանալ նոր, հզոր ժամանակակից տեխնիկայի բազայի վրա, վորն ստեղծեց հաղթական սոցիալիստական հեղափոխությունը: Քաղաքի և գյուղի ազատ աշխատավորները թամբեցին նոր տեխնիկան և առաջ մղեցին այն դեպի աշխատանքի սոցիալիստական արտադրողականության բարձունքները:

Արդյունաբերության բանվորների ստախանովյան աշխատանքը մեծապես արագացրեց մեր առաջխաղացման տեմպը, խիստ կերպով բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը:

Աշխատանքի արտադրողականությունը



սոցիալիստական արդյունաբերության մեջ 1913 թվականի համեմատությամբ աճել է 308,8 տոկոսով: Հենց միայն 1936 թվականին—ստախանովյան առաջին տարում—աշխատանքի արտադրողականությունը խոշոր արդյունաբերության մեջ բարձրացավ 21 տոկոսով, իսկ ծանր արդյունաբերության մեջ, վորի ընդերքում ծնունդ է առել ստախանովյան շարժումը—26 տոկոսով: Հաշվի առնելով բանվորական որվա տևողությունը, 1936 թվականին աշխատանքի արտադրողականությունն ամբողջ խոշոր արդյունաբերության մեջ 1913 թվականի համեմատությամբ բարձրացել է 4 անգամ:

Ստախանովյան շարժման զարգացման հետևանքով երկրորդ հնգամյա պլանի առաջադրանքը, այն է՝ աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ 5 տարվա ընթացքում բարձրացնել 63 տոկոսով, կատարվեց արդեն 1936 թվին:

Ստախանովյան շարժումը, վորն աճել է առաջավոր տեխնիկայի բազայի վրա,

մեծ տեղաշարժեր առաջացրեց մեքենաների ու սարքավորման լավագույն օգտագործման ասպարեզում:

Ստախանովյան շարժման զարգացման հիման վրա արդյունաբերության մեջ վերանայվեցին արտադրանքի նորմաները, ըստ վորում ծանր արդյունաբերության մեջ այդ նորմաները վերանայվել են արդեն յերկու անգամ:

Այն ձեռնարկություններում և այն ճյուղերում, վորտեղ աշխատանքը լավ է կազմակերպված, վորտեղ կուսակցական, տնտեսական ու պրոֆեսիոնալ կազմակերպությունները բոլշևիկորեն ղեկավարում են ստախանովյան շարժումը, այնտեղ արտադրանքի նոր նորմաները ևս մեծ թվով բանվորների կողմից զգալիորեն գերակատարվում են:

Շատ ճյուղերում բանվորների 75 տոկոսից ավելին 25—50 տոկոսով և նույնիսկ 2—3 անգամ ու ավելի գերակատարում է արտադրանքի նորմաները:



Ստախանովյան շարժումը հրաշքներ է գործում նաև գյուղատնտեսության բնագավառում: Գյուղատնտեսական արտադրության առաջավորները՝ տրակտորիստները, կոմբայնավարները, կոլտնտեսային բրիգադների բրիգադիրները, կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները ձեռք են բերում հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների՝ աշխարհում չտեսնված բերք, գյուղատնտեսական արտադրության պրակտիկայի մեջ են մտցնում ագրոտեխնիկական նոր միջոցառումներ ու յեղանակներ, ձեռք են բերում գյուղատնտեսական մեքենաների օգտագործման բարձր նորմաներ, ցույց են տալիս աշխատանքի սոցիալիստական արտադրողականության շլացուցիչ օրինակներ:

Մեկ տրակտորի արտադրողականությունը ՄՏ կայաններում կազմում էր 1933 թվականին 405 հեկտար, 1935 թվականին՝ 467 հեկտար և 1936 թվականին՝ 488,8 հեկտար: Մեկ կոմբայնի արտադրողականու-

թյունը յեղել է 1933 թվականին 70,6 հեկտար, 1935 թվականին՝ 256 հեկտար և 1936 թվականին՝ 345,7 հեկտար։

Արտադրանքի այս նորմաները միջին են ամբողջ ԽՍՀՄ համար։ Իսկ առաջավոր տրակտորիստներն ու կոմբայնավարները տիրապետելով նոր, սոցիալիստական հողագործության տեխնիկային, շատ հետ են թողել այդ նորմաները, յուրաքանչյուր անիվավոր տրակտորի տարեկան միջին արտադրողականությունը հասցնելով 2000 ու ավելի հեկտարի, իսկ թրթուռավոր (ՉՏԶ) տրակտորինը՝ մինչև 5 հազար հեկտարի։

Լավագույն ստախանովական կոմբայնավարները սեզոնի ընթացքում յերկու «ստալինեցների» կցորդով հավաքում են 3,5—4 հազար ու ավելի հեկտարի բերք։

Տրակտորների ու կոմբայնների միջին արտադրողականությամբ մենք արդեն շատ առաջ ենք անցել Ամերիկայից։ Մեկ տրակտորի արտադրողականությունը ԽՍՀՄ-ում 5,5 անգամ գերազանցում է Ամերիկայում



տրակտորի ունեցած արտադրողականությունից, իսկ կոմբայնինը՝ մոտ 1,5 անգամ։

Խորհրդային ու կոլտնտեսային դաշտերի ստախանովականները վոչ պակաս շլացուցիչ հաջողություններ են ձեռք բերում նաև բարձր բերքի համար մղվող պայքարի բնագավառում։ Ստալինյան 7—8 միլիարդ փութ հացահատիկի համար պայքարի յեն յելել կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների միլիոնավոր մասսաները։ Առաջավոր կոլտնտեսային բրիգադներն ու ողակներն արդեն հավաքում են հեկտարից 200—300 փութ և ավելի հացահատիկային կուլտուրաների բերք։ Հազարավոր կոլտնտեսային բրիգադներ ու ողակներ այս տարի յուրաքանչյուր հեկտարից հավաքում են 30—50 ցենտներ բամբակ։

Ճակնդեղի դաշտերի ստախանովուհիները յուրաքանչյուր հեկտարից հավաքում են ավելի քան հազար ցենտներ շաքարի ճակնդեղ։

Լայն զարգացում է ստացել ստախանովյան շարժումը նաև անասնապահության աշխատողների մեջ՝ հանուն բարձր կթի, հանուն անասունների քաշի ավելացման բարձր նորմաների, հանուն մատղաշի պահպանման, հանուն խորհտնտեսություններում և կոլտնտեսություններում անասունների բարձր մթերատվության:

Աշխատանքի հիանալի որինակներ են ցույց տալիս յերկաթուղային տրանսպորտի ստախանովական — կրիվոնոսականները: Ստախանովյան շարժման շնորհիվ յերկաթուղային տրանսպորտն ավելացրեց շոգեքարշերի օրական միջին վազքը, աճեց շոգեքարշերի ու վագոնների յերթևեկության արագությունը, աճեց ապրանքատար գընացքների քաշը:

Ստախանովյան շարժումը — մեր սոցիալիստական հայրենիքի հզորության ու անխորտակելի ամրության մեծ աղբյուրն է: Հենց այդ պատճառով էլ ֆաշիզմի արյունարբու շները — խորհրդային ժողո-



վրդի տրոցկիստական-բուխարինյան և այլ դավաճանները փորձում եյին և փորձում են վիժեցնել ստախանովյան շարժումը, արգելակել նրա հուժկու աճումը: Տրոցկիստական-բուխարինյան լրտեսների ու դիվերսանտների ձեռքերը ներկված են շատ ստախանովականների — մեր հայրենիքի լավագույն զավակների — սրբազան արյամբ:

Անողոքաբար դուրս վռնդելով և վոչընչացնելով տրոցկիստական — բուխարինյան վոհմակի թափթփուկներին, մերկացնելով ժողովրդի թշնամիների վնասարարական մեքենայությունները, վորոնց նպատակն է վիժեցնել ստախանովյան շարժումը, ռեալ, ամենորյա ոգնություն ցույց տալով ստախանովականներին, ինչպես այդ պահանջում են ՀամԿ(բ)Կ Կենտկոմի փետրվարյան պլենումի վորոշումները, յերկիրը սոցիալիստական մեծ հեղափոխության 20-րդ տարեդարձին ձեռք կբերի աշխատանքի արտադրողականության նոր բարձունքներ,

*համաշխարհային պատմական նոր հաղթանակներ։*

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՃՈՒՄԸ

«Մեր հեղափոխությունը միակն է, որը ոչ միայն փշրեց կապիտալիզմի շղթաները և ազատություն տվեց ժողովրդին, այլև կարողացավ ժողովրդին տալ նյութական պայմաններ, ունևոր կյանքի համար» (Ի. Ստալին)։

*Պարազիտ դասակարգերի վերջնական լիկվիդացիան, արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի վիթխարի աճումը, ժողովրդական յեկամտի աճումը, որն ամբողջապես գնում է խորհրդային ժողովրդի տրամադրության տակ, ապահովեցին բանվորների, կոլտնտեսականների ու բոլոր աշխատավորների կենսական մակարդակի արմատական վերելքը։ Շնորհիվ կուսակցության և խորհրդային կառավարու-*



*թյան մշտական հոգատարության, ԽՍՀՄ-ում արագ տեմպով աճում է սպառման առարկաների արտադրությունը, կատարվում է ապրանքների գների սիստեմատիկ իջեցում, տարեց-տարի աճում է բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը, ավելանում են կոլտնտեսականների յեկամուտները, աճում է բանվորների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի ունևորությունը։*

ԽՍՀՄ ժողովրդական յեկամուտը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ աճել է 5 անգամ—1913 *թվականին ժողովրդական յեկամուտը կազմում էր* 21 *միլիարդ ռուբլի,* 1937 *թվականի պլանով այն պետք է կազմի* 105,5 *միլիարդ ռուբլի։*

*Ցարական Ռուսաստանում ժողովրդական յեկամտի առյուծի բաժինը պատկանում էր կապիտալիստներին, կալվածատերերին և այլ պարազիտ տարրերին։ ԽՍՀՄ-ում*

ժողովրդական յեկամուտը պատկանում ե աշխատավորներին։

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության մեծ նվաճումներից մեկը «գործազրկության վոչնչացումն ե և վաղվա որվա նկատմամբ անվստահության վերացումը բանվորների միջից» (Ի. Ստալին)։ «Մեզ մոտ, ԽՍՀՄ-ում, բանվորները վաղուց արդեն մոռացել են գործազրկության մասին» (Ի. Ստալին)։

Մինչդեռ կապիտալիստական յերկրներում տասնյակ միլիոնավոր աշխատավորներ աշխատանք չունեն, ԽՍՀՄ բոլոր քաղաքացիներն ունեն աշխատանքի յերաշխավորված իրավունք։ Սոցիալիզմի այդ համաշխարհային-պատմական հաղթանակն ամրապնդված ե Ստալինյան Սահմանադրության 118-րդ հոդվածով։

ԽՍՀՄ-ում վոչ միայն վերացված ե գործազրկությունը, այլև հաստատված ե աշխարհում ամենակարճ բանվորական որը։ 7-ժամյա բանվորական որն իրականացված



ե ամբողջ արդյունաբերության մեջ։ Բանվորների վորոշ կատեգորիաներ (հանքափորներ և այլն) ունեն 6-ժամյա բանվորական որ։

Տարեց-տարի աճում ե աշխատավարձը։ 11 տարվա ընթացքում — 1924—1925 թվականից մինչև 1936 թվականը — խոշոր արդյունաբերության բանվորի տարեկան միջին աշխատավարձն աճել ե 566 ռուբլուց մինչև 2862 ռուբլու, այսինքն՝ 5 անգամ։ Խորհրդային Միության բանվորների ու ծառայողների աշխատավարձի ֆոնդն աճել ե 1924—25 թվականի 3,8 միլիարդ ռուբլուց 1937 թվականին հասնելով մինչև 78,3 միլիարդ ռուբլու։ 1936 թվականին՝ 1929 թվականի համեմատությամբ արդյունաբերական բանվորի աշխատավարձը ԽՍՀՄ-ում աճել ե 2,9 անգամ։

Բանվորների ու ծառայողների յեկամուտների ավելացումն արտահայտություն ե գտնում նաև աշխատանքային խնայողությունների աճման մեջ։ Աշխատանքային

խնայողությունները 1924 թվականից մինչև 1936 թվականն աճել են 7 միլիոնից մինչև 17,4 միլիոն ռուբլու:

Բանվորների ու ծառայողների աշխատավարձի ֆոնդի ու միջին աշխատավարձի աճման հետ միաժամանակ հսկայական չափով աճել են նաև սոցիալական ապահովագրության բյուջեյից բանվորներին ու ծառայողներին բաց թողնվող միջոցները, որ պետությունն ու պրոֆմիությունները տալիս են որպես կենսաթոշակ, հղիության, ծննդաբերության, հիվանդության նպաստ, բուժական սնունդ, ծախսում են հանգստյան տների ու սանատորիաների ուղեգրեր ձեռք բերելու համար, բանվորների ու ծառայողների կուլտուր-լուսավորական սպասարկման և այլ նպատակների համար:

Ստախանովյան շարժման զարգացումն է՛լ ավելի յե բարձրացնում բանվորի աշխատավարձը, է՛լ ավելի յե բարելավվում խորհրդային ժողովրդի նյութական բարեկեցությունը:



ԽՍՀՄ-ում վերացված են բոլոր կապիտալիստական դասակարգերը, այդ թվում նաև կուլակների դասակարգը, գյուղում վոչնչացված է կուլակային ստրկությունը: «Իսկ ի՞նչ է նշանակում այդ: Այդ նշանակում է, որ առնվազն 20 միլիոն գյուղացիական բնակչության, առնվազն 20 միլիոն չքավորների փրկեցինք աղքատությունից ու քայքայումից, փրկեցինք կուլակային ստրկությունից և կոլտնտեսությունների շնորհիվ դարձրինք ապահովված մարդիկ» (Ի. Ստալին):

Կոլտնտեսային կարգը գյուղացիների համար ապահովեց նրանց յեկամուտների, ունևորության ու կուլտուրայի արագ աճում: Տարեց-տարի աճում է յուրաքանչյուր կոլտնտեսականի վաստակած աշխօրերի թիվը: Ավելանում է աշխօրի «քաշը», աճում են կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների դրամական յեկամուտները:

Ուրախ ու հրճվանքով է դիմավորում կոլտնտեսային գյուղը Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության մոտեցող 20-րդ տարեդարձը։ Հարուստ բերք է հավաքել յերկիրը, բարձր են կոլտնտեսականների յեկամուտները։ Մ. Ի. Կալինինի անվան կոլտնտեսության կոլտնտեսականները, Խակասսիում, այս տարի ստանում են յուրաքանչյուր աշխորի համար 2 փութ հացահատիկ։ Չելյաբինսկի մարզի Բագարյակսկի շրջանի «Տրուդովիկ» կոլտնտեսությունում կոլտնտեսականները յուրաքանչյուր աշխորի համար ստանում են 1,5 փութ հենց միայն հացահատիկային կուլտուրաններ։ Աշխորին մեկ փութ հացահատիկ են ստանում Օդեսայի մարզի Վոզնեսենսկի շրջանի Շևչենկոյի անվան արտելի կոլտնտեսականները։ Ուզբեկական ԽՍՀ Մանանգանի շրջանի «Շուրո» բամբակագործական կոլտնտեսությունում անցյալ տարի կոլտնտեսականի վաստակած յուրաքանչյուր աշխորն արժեր



15 ռուբլի, այս տարի աշխորի արժեքը բարձրանում է մինչև 25 ռուբլու։ Քիչ չի լինի 20—25 հազար ռուբլի յեկամուտ ստացող կոլտնտեսականների թիվը։

Բոլշևիկների կուսակցությունը սոցիալիստական կոլտնտեսային կարգի հիման վրա գյուղացիությանը հասցրեց յերջանիկ, ունևոր ու կուլտուրական կյանքի։

## ՍՊԱՌՄԱՆ ԱՃՈՒՄԸ

Բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների յեկամուտների աճումը թեթև ու սննդի արդյունաբերության ապրանքների ավելի ու ավելի մեծ պահանջ է ներկայացնում։ ԽՍՀՄ-ում չափազանց աճել է սպառման առարկաների արտադրությունը։ 1913 թվականի համեմատությամբ սպառման առարկաների արտադրությունը 1936 թվականին աճել էր 5 անգամ, իսկ 1917 թվականի համեմատությամբ՝ 10 անգամ։

Խորհրդային կառավարությունը կազ-

մակերպեց լայն սպառման առարկաների նոր տեսակների արտադրություն, որոնք ցարական Ռուսաստանում բնավ չէին արտադրվում (հեծանիվներ, պատեֆոններ, ռադիո-ընդունիչներ, գրպանի ժամացույցներ, լուսանկարչական ապարատներ և այլն)։ Այժմ դրանք լայնորեն մտել են բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների կենցաղի մեջ։ Այդ ապրանքներով հսկայական չափով մատակարարվում են քաղաքի և գյուղի աշխատավորները։

Արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի աճմանը համապատասխան տեղի յե ունեցել նաև ապրանքաշրջանառության զարգացում։ Մանրածախ ապրանքաշրջանառությունը 1924—25 թվականի 5—6 միլիարդ ռուբլուց բարձրացել է 1936 թվականին հասնելով ավելի քան 106 միլիարդ ռուբլու։ Քարտային սիստեմի վերացումը, միասնական գների սիստեմի կիրառումն ոժանդակեցին խորհրդային առևտրի ե՛լ ավելի ծավալմանը, խորհրդային



ռուբլու ամրացմանը, գների իջեցմանը և աշխատավորների բարեկեցության հետագա աճմանը։ Նախնական հաշիվներով, յերկրորդ հնգամյակի ընթացքում ապրանքաշրջանառությունն աճել է 2,3 անգամ։

Կուսակցությունն ու կառավարությունը սիստեմատիկաբար և հետևողականորեն պետական և կոոպերատիվ առևտրի մեջ կիրառում են մանրածախ գների իջեցման քաղաքականությունը։

Պետական առևտրի մեջ գները 1937 թվականին իջել են 2,5 անգամ, այն գների համեմատությամբ, որոնք գոյություն ունեյին մինչև քարտային սիստեմի վերացումը. կոլտնտեսային շուկաներում գներն իջել են նույնպես 2,5 անգամ այն գների համեմատությամբ, որոնք կային յերկրորդ հնգամյակի սկզբին։

Գների իջեցումից խորհրդային սպառողը տնտեսում է ստացել 1936 թվականին 4980 միլիոն ռուբլի, 1936 թվականին՝ 5040 միլիոն ռուբլի։ 1937 թվականին հենց մի-

այն լայն սպառման արդյունաբերական ապրանքների մանրածախ գների իջեցումից խորհրդային սպառողն ստացել է 1450 միլիոն ռուբլի տնտեսում:

Յերկրորդ հնգամյակի տարիներին ոչ միայն զգալիորեն աճել են բանվորների ու ծառայողների ծախսերը սննդամթերքներ ու լայն սպառման առարկաներ ձեռք բերելու վրա, այլ չափազանց էական կերպով փոխվել է նաև այդ ծախսերի բուն կառուցվածքը՝ բարձրորակ սննդամթերքների (միրգ, յուղ, ձու, միս և այլն) և կուլտուր-կենցաղային անհրաժեշտության առարկաների (կահկարասի, յերաժշտական գործիքներ, գրքեր և այլն) գնման ծախսերի զգալի աճման իմաստով:

Սպառման կառուցվածքը կոլտնտեսային գյուղում ավելի ու ավելի յե մոտենում քաղաքի բանվորների ու ծառայողների սպառման կառուցվածքին: Ինչպես այստեղ, այնպես և քաղաքում առատորեն աճում է մրգի ու պտուղների, մսի, յուղի,



շաքարի, ձկնամթերքների, ձվի, ինչպես նաև լայն սպառման առարկաների ու զանազան կուլտ-ապրանքների սպառումը:

Բավական է բերել միայն մեկ օրինակ, տեսնելու համար, թե ինչպիսի հսկայական չափով է աճել կոլտնտեսային գյուղի պահանջն ապրանքների նկատմամբ: Տամբովի մարզի Կիրսանովյան շրջանի Վյաչկի գյուղի կոլտնտեսականները վերջերս կոոպերացիային պատվիրել են 22 հեծանիվ, 115 հազար ռուբլու բամբակե գործվածքեղեն, 57 հազար ռուբլու կոշկեղեն, 47 հազար ռուբլու պատրաստի հագուստեղեն և այլն:

Այսպես, օրեցօր ավելի լավ, ավելի ուրախ ու ավելի ունևոր է դառնում Խորհրդային Միության ժողովուրդների կյանքը:

Ժողովրդի թշնամիները — գերմանական ու ճապոնական ֆաշիզմի տրոցկիստական-աջ գործակալները, լրտեսները, վնասարարներն ու դիվերսանտները փորձում

եյին բանվորներից, կոլտնտեսականներից և ինտելիգենցիայից խլել այդ յերջանիկ, ունևոր ու հրճվալից կյանքը, նրանք ուզում եյին նորից նրանց վիզն անցկացնել ճնշման, ստրկության ու շահագործման շղթաները: Բայց թշնամիների հաշիվները սխալ դուրս յեկան: Չկա այնպիսի ուժ, վորը կարողանա մեր յերկրի աշխատավորներից խլել մեծ Հոկտեմբերի նվաճումները:

## ԱՃԵԼ ԵՆ ՆՈՐ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՔԱՂԱՔՆԵՐ

Վիթխարի թափ են ընդունել մեր քաղաքների բարեկարգման և բնակարանային կոմունալ տնտեսության վերակառուցման ուղղությամբ կատարվող աշխատանքները: Հիմնովին վերակառուցվում են և նոր կերպարանք են ստանում հին քաղաքները: Քաղաքային բնակարանային ֆոնդի տարածությունը 1927 թվականին կազմում եր 158,9 միլիոն քառակուսի մետր, իսկ 1936 թվա-



կանին այն ընդարձակվեց՝ հասնելով մինչև 215 միլիոն քառակուսի մետրի:

Ընկեր Ստալինի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ մշակվել և իրականացվում ե ԽՍՀՄ մայրաքաղաք Մոսկվայի վերակառուցման հոյակապ պլանը: Մոսկվայի մետրոպոլիտենը հայտնի յե վորպես լավագույնն ամբողջ աշխարհում:

Ծաղկում են մեր քաղաքները: Այնտեղ ստեղծվում են ժամանակակից կուլտուրական, բնակարանային, կոմունալ բարեկարգման բոլոր տեսակները: Ահա մի քանի հետաքրքիր թվեր:

Մինչև սոցիալիստական մեծ հեղափոխությունը ջրմուղ ունեցող քաղաքներ յեղել են 214, իսկ 1937 թվականին այդպիսի քաղաքների թիվը հասավ 416-ի: Տրամվայ ունեցող քաղաքներ յեղել են համապատասխանորեն 34, հասել ե 71-ի: Կոյուղի ունեցող քաղաքներ յեղել ե 33, դարձել ե 95: Տրոլեյբուսային հաղորդակցություն ունեցող քաղաքներ բոլորովին չեն յեղել, այժմ կա այդպիսի 5 քաղաք:

Խորհրդային իշխանության տարիների ընթացքում վերակառուցվել են հին քաղաքները և կառուցվել տասնյակ ու հարյուրավոր նոր սոցիալիստական քաղաքներ, արդյունաբերական ու կուլտուրական կենտրոններ: Ահա ստալինյան հնգամյակների ընթացքում մեր մեծ հայրենիքի զանազան ծայրերում կառուցված քաղաքների բնավ ոչ-լրիվ ցանկը—Մագնիտոգորսկ, Բերեզնիկի, Կրասնոուրալսկ (Ուրալ), Ստալինսկ, Պրոկոպևսկ, Կեմերովո, Անջերո–Սուջենսկ (Արևմտյան Սիբիր), Չերեմխովո, Իգարկա (Արևելյան Սիբիր), Ձերժինսկ (Գորկու մարզ), Կիրովսկ (Լենինգրադի մարզ), Ստալինոգորսկ (Մոսկվայի մարզ), Կարագանդա, Կոունրադ (Ղազախական ԽՍՀ), Զապորոժյե (Ուկրաին. ԽՍՀ), Չարջույ (Թուրքմենական ԽՍՀ), Ստալինաբադ (Տաջիկական ԽՍՀ), Ֆրունզե (Կիրգիզական ԽՍՀ), Կանդալակշա (Կարելական ԽՍՀ), Կոմսոմոլսկ՝ Ամուրի վրա:

Մութ հյուղերի, ցուրտ տանիքների



ու խոնավ նկուղների փոխարեն, զարշահոտ «սոբաչեյեվկան՛երի» փոխարեն, որտեղ ապաստան էին գտնում բանվորները ցարական Ռուսաստանում, խորհրդային իշխանությունը կառուցեց հազարավոր նոր շենքեր, մաքուր, լուսավոր սենյակներով, ջրմուղով, կոյուղիով և առողջ կուլտուրական կենցաղի այլ միջոցներով:

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒՄԸ

Խորհրդային իշխանության քսան տարվա ընթացքում հսկայական չափով աճեց հիվանդանոցների, ամբուլատորիաների ցանցը, բժշկական անձնակազմի թիվը քաղաքներում և գյուղերում: 1913 թվականին յեղել է ընդամենը 176 հազար հիվանդանոցային մահճակալ, այդ թվում 89 հազարը քաղաքներում և 49 հազարը՝ գյուղական վայրերում:

1936 թվականին մահճակալների թիվն աճեց մինչև 564 հազարի, որից 301·300-ը

քաղաքում և 166․700-ը գյուղական վայրերում, աճում ավելի քան 3 անգամ։

Առ 1-ն հունվարի 1914 թվականի յեղել է ընդամենը միայն 19,8 հազար բժիշկ, իսկ 1937 թվականի սկզբին այդ թիվը հասավ մոտ 100 հազարի։ Առողջապահության ծախսերի համար 1917 թվականին հատկացված է յեղել ընդամենը 128,5 միլիոն ռուբլի, իսկ 1936 թվականին ծախսվել է 6,92 միլիարդ ռուբլի։

1928 թվականին ՀԱՄԿԽ-ի հանգստյան տներում, կուրորտներում և սանատորիաներում սպասարկվել են 733 հազար մարդ, 1936 թվականին՝ 2271 հազար մարդ։

Մեծ է կուսակցության և խորհրդային կառավարության հոգատարությունը խորհրդային կանանց առողջության պահպանման մասին, յերեխաների դաստիարակությունը բարելավելու մասին։

Այդ մասին է պերճախոս կերպով վկայում համաժողովրդական քննարկման յենթարկված և համաժողովրդական հավանության արժանացած որենքը՝ «Աբորտն արգելելու,



ծննդկաններին ցույց տրվող նյութական ոգնությունը բարելավելու, բազմանդամ ընտանիքավոր մայրերի համար պետական ոգնություն սահմանելու, ծննդատների, մանկամսուրների ու մանկապարտեզների ցանցն ընդարձակելու, ալիմենտ չվճարելու համար քրեական պատիժն ուժեղացնելու և ապահարզանի վերաբերյալ որենսդրության մեջ մի քանի փոփոխություններ մըտցնելու մասին»։

Ցարական Ռուսաստանում 1914 թվականին յեղել է ընդամենը 6824 ծննդկանի մահճակալ, այժմ այդպիսի մահճակալների թիվը 80 հազարից ավելի յե։ Մսուրային մահճակալներ մինչև հեղափոխությունը յեղել են ընդամենը 550 հատ, իսկ այժմ դրանց թիվը հասել է 627․817-ի։ Մանկապարտեզներում ու մանկական հրապարակներում 1914 թվականին յեղել է միայն 7 հազար յերեխա, իսկ 1936 թվականին ԽՍՀՄ-ում—4271 հազար։

1937 թվականին բազմանդամ ընտանիքա-

վոր մայրերին վճարվել է մոտ մեկ միլիարդ ռուբլի պետական նպաստ:

Բերված թվերը խոսում են աշխատավորների առողջության բարելավման, առողջ սերնդի դաստիարակության համար կուսակցության ու կառավարության մըշտական հոգատարության մասին: Այդ փաստերը խոսում են մեր յերկրի աշխատավորների հանգստի մեծ իրավունքի իսկապես լայն իրականացման մասին:

Դրա հետևանքով անշեղորեն բարձրանում է աշխատավորների առողջությունը, աճում է ծննդաբերությունը, խիստ կերպով նվազել է հիվանդությունների ու մահացության թիվը, արագորեն ամրապնդվում է բնակչության ֆիզիկական զարգացումը: Կարմիր բանակի զորակոչերը պայծառորեն ցույց են տալիս, թե ինչպիսի առողջ սերունդ է աճեցնում խորհրդային ժողովուրդը:

Միանգամայն հակառակ պատկերն ենք մենք տեսնում բուրժուական յերկիրներում և մասնավորապես ֆաշիստական Գերմանիա-



յում: Այնտեղ ժողովրդական մասսաների սիստեմատիկ թերսնման ու սովածության հետևանքով, ընդհանուր հյուծում և օրգանիզմի թուլություն ունեցող նորակոչիկների տոկոսը (բժշկական քննության տվյալներով) կրկնապատկվել է: Նույնպիսի դրություն է նաև Ճապոնիայում, Լեհաստանում ու այլ յերկիրներում:

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԾԱՂԿՈՒՄԸ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, վորը մեր հայրենիքը փրկեց կալվածատերերի, կապիտալիստների, տերտերների ու կուլակների դարավոր ճնշման ծանր շղթաներից, սքանչելի պայմաններ ստեղծեց կուլտուրայի, արվեստի, ժողովրդական ստեղծագործության չտեսնված ծաղկման համար:

Կուլտուրական շինարարության ճակատում սոցիալիստական հեղափոխության մեծագույն հաղթանակն է հանդիսանում նախ

և առաջ ԽՍՀՄ-ում համատարած գրագիտության հասնելը և ընդհանուր պարտադիր յոթնամյա ուսուցման կիրառումը։

1897 թվականին ցարական Ռուսաստանում յուրաքանչյուր հարյուր հոգուն ընկնում էր 75 անգրագետ։ Միայն սոցիալիստական հեղափոխությունը կարողացավ լուծել և արդեն համարյա լուծել է անգրագիտության գլխովին վերացման խնդիրը։

Այն մեծ իրավունքներից մեկը, որ սոցիալիստական մեծ հեղափոխությունը տվեց ԽՍՀՄ քաղաքացիներին, կրթության իրավունքն է։ Այդ իրավունքը յերաշխավորված է դպրոցների արագորեն աճող ցանցով, ձրի կրթությամբ, պետական թոշակների սիստեմով, ուսանողներին հանրակացարան տրամադրելով և այլն։



ԱՀԱ ԹԵ ԻՆՉՊԵՍ Է ԱՃԵԼ ՍՈՎՈՐՈՂՆԵՐԻ ԹԻՎԸ.

| Սովորողների թիվը | 1914—15 թ. | 1937 թ. (պլան) |
|---|---|---|
| Հանրակրթական դպրոցներում (տարրական, թերի միջնակարգ, միջնակարգ) (միլիոններով) | 7,8 | 30,0 |
| ԲՈՒՀ-երում և ԲՏՈՒՀ-ներում, տնտեսական ակադեմիաներում, կոմ-ԲՈՒՀ-երում (հազարներով) | 124,7 | 555,5 |
| Տեխնիկումներում (հազարներով) | 48,0 | 986,6 |
| Բանֆակներում (հազարներով) | չի յեղել | 192,5 |

1915 թվականին Ռուսաստանում յեղել է ընդամենը 106 հազար դպրոց, իսկ 1936 թվականին ԽՍՀՄ-ում արդեն կար ավելի քան 170 հազար դպրոց։

Ցարական Ռուսաստանում յեղել է ընդամենը 91 բարձրագույն ուսումնական հաստատություն, իսկ ԽՍՀՄ-ում 1936 թվականին կար 700 բարձրագույն ուսումնական հաստատություն։

Խորհրդային իշխանության տարիներին դպրոցական շենքերի ֆոնդն ավելացել է

100 միլիոն խորանարդ մետրով: 20 տարում մեր յերկրը կառուցել ե ավելի շատ դպրոց, քան ցարական ինքնակալությունը՝ 200 տարվա ընթացքում:

Խորհրդային իշխանությունն աշխատավորների համար ստեղծեց բոլոր պայմանները, տիրապետելու գիտությանն ու տեխնիկային: Ջրի ուսուցման, ուսանողներին հանրակացարաններով ապահովելու պայմաններում, վճարվում ե նաև մոտ 2 միլիարդ ռուբլի թոշակ:

Հենց միայն 1936 թվականին խորհրդային ԲՈՒՀ-երն ու ԲՏՈՒՀ-ները ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերի համար բաց են թողել մոտ 80 հազար մասնագետ, իսկ 1937 թվականին բաց կթողնեն մոտ 94 հազար մասնագետ: Դրանք բոլորը «ստորին» խավերից դուրս յեկած մարդիկ են—բանվորներից ու գյուղացիներից, վորոնց համար առաջ փակ եր բարձրագույն ուսումնական հաստատությունների մուտքը:



Հին Ռուսաստանում, վորտեղ կար միայն 91 բարձրագույն ուսումնական հաստատություն և 233 տեխնիկում, բարձրագույն կրթությունն ունևոր դասակարգերի արտոնությունն եր: 1914—15 թվականին յեղած 124 հազար ուսանողների 36 տոկոսն ազնվականների և խոշոր չինովնիկների յերեխաներ եյին, 10,3 տոկոսը տերտերի յերեխաներ, 11 տոկոսը՝ պատվավոր քաղաքացիների ու վաճառականների յերեխաներ, 14,5 տոկոսը կուլակների յերեխաներ, 24,3 տոկոսը քաղքենիների յերեխաներ, 2,8 տոկոսը այլ դասերի պատկանողների յերեխաներ և մնացածները ոտարերկրացիներ:

Խորհրդային իշխանությունը բոլոր պայմաններն ստեղծեց աշխատավորների մասսայական ուսուցման համար նաև ձեռնարկություններում, հիմնարկություններում, խորհտնտեսություններում, ՄՏ կայաններում ու կոլտնտեսություններում, վորտեղ նրանք սովորում են տեխնիկական ագրոնոմիական ու այլ գիտելիքներ: Մասսայական պրոֆեսիայի կադրեր պատրաս-

տող դասընթացներում և դպրոցներում սովորել են (հազարներով)

| 1935 թ. | 1936 թ. | 1937 թ. |
| --- | --- | --- |
| 4,373,2 | 7,188,0 | 8,352,0 |

ԲՈՒՀ-երում, տեխնիկումներում, դըպրոցներում, դասընթացներում ու խմբակներում սովորելուն զուգընթաց, բանվորներն ու կոլտնտեսականներն իրենց կուլտուրական ու քաղաքական մակարդակը բարձրացնում են նաև ինքնակրթության միջոցով: Կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների կողմից մեկ ամսվա ընթացքում ինքնակրթության վրա ծախսվող ժամերի թիվը 1934 թվականից մինչև 1936 թվականն աճել է 23 տոկոսով, այդ թվում պատանիների մեջ՝ 55 տոկոսով և կոլտնտեսուհիների մեջ՝ 28 տոկոսով, վորից աղջիկների մեջ՝ 56 տոկոսով:

Կուլտուրական ու կրթված է դառնում կոլտնտեսային գյուղը: Թերթը կոլտնտեսականների կենցաղի անհրաժեշտ պարագան է դարձել: Դեռ 1922 և 1923 թվականներին



գյուղում մինչև 24 տարեկան հասակի կանայք բնավ թերթ չէյին կարդում, իսկ արդեն 1934 թվականին թերթ կարդում էյին այդ հասակի կոլտնտեսուհիների 28,1 տոկոսը: Նույն հասակի տղամարդկանցից 1922—1923 թվականներին թերթեր կարդում էյին միայն 20 տոկոսը, իսկ 25-ից մինչև 39 տարեկան հասակի տղամարդկանց 57,2 տոկոսը: 1934 թվականին թերթ կարդացող տղամարդկանց թիվը յեղել է համապատասխանորեն 76,3 տոկոս և 85,8 տոկոս: Բայց չէ՞ վոր այդ ժամանակվանից անցել է ամբողջ 3 տարի: Այժմ քիչ չէ այնպիսի կոլտնտեսային տնտեսությունների թիվը, վորոնք ստանում են մի քանի թերթ, ստանում են ժուռնալներ:

Գիրքը, թատրոնը, կինոն քաղաքի և գյուղի աշխատավորների կյանքի, կենցաղի անբաժանելի մասն են դարձել:

Վիթխարի չափերով աճել է կուլտուրական հիմնարկների ցանցը՝

| | 1914 թ. | 1936 թ. |
|---|---|---|
| Մասսայական գրադարանների թիվը (հազարներով) | 12,6 | 53,4 |
| Այդ թվում գյուղում | — | 40,0 |
| Գրադարաններում յեղած գրքերը (միլիոն օրինակներով) | 8,9 | 105,3 |
| Այդ թվում՝ գյուղական գրադարաններում (միլիոն օրինակներով) | — | 32,9 |
| Ակումբներ և խրճիթ-ընթերցարաններ (հազարներով) | 0,2 | 80,9 |
| Այդ թվում՝ գյուղում (հազարն.) | 0,08 | 63,7 |
| Թատրոններ և կրկեսներ (միավորներով) | 176 | 724 |
| Կինոներ (հազարներով) | 1,2 | 28,6 |
| Թանգարաններ (միավորներով) | 112 | 738 |
| Կուլտուրայի ու հանգստի պարկեր | — | 228 |

Սոցիալիզմի ստեղծած տնտեսական, նյութական հզոր բազայի վրա փարթամորեն ծաղկեց ՍՍՀՄ ժողովուրդների՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստա-



կան կուլտուրան: Գրքերը, թերթերը ազգային շրջաններում լույս են տեսնում մայրենի լեզվով, հսկայական տիրաժով:

Մեր հայրենիքի ժողովուրդները տաղանդների անսպառ աղբյուր են: Սոցիալիստական ռեալիզմի և ժողովրդական ստեղծագործության հիման վրա փարթամ գույներով ծաղկում է խորհրդային արվեստը:

Խորհրդային արվեստը նվաճել է համաշխարհային արվեստի բարձունքները: Իր թեմատիկայով, գաղափարական հագեցվածությամբ ու նպատակասլացությամբ, իր վարպետությամբ խորհրդային թատրոնը, կինոն, յերաժշտությունը, քանդակագործությունը և այլն, աշխարհում չունեն իրենց հավասարը: Այդ մասին են խոսում մեր թատրոնների, Կարմիր-բանակային յերգի ու պարի կարմրադրոշ անսամբլի հաղթական հաջողություններն արտասահմանում, խորհրդային ջութակահարների ու դաշնակահարների հաղթանակները և այլն:

Խորհրդային շատ կինոնկարներ ճանաչ-

ված են որպես համաշխարհային արվեստի շեդևրներ: Անմահ «Չապայեվը», «Վերջին գիշերը», «Բալթիկի պատգամավորը», «Կուսակցական տոմսը», «Մենք Կրոնշտադտից ենք» ֆիլմերը—այդ բոլորը խորհրդային կինեմատոգրաֆիայի վոսկե ֆոնդն են, վորն իր մեջ մարմնավորում ե ստրկության ու շահագործման լուծը մեկ ընդմիշտ թոթափած և կոմունիստական հասարակություն կառուցող ժողովուրդների ստեղծագործական հանճարը:

Խորհրդային Միության ժողովուրդներն ստեղծեցին իրենց թատրոնը: Ուկրաինական, վրացական, ուզբեկական, տաջիկական, ղազախական արվեստի՝ Մոսկվայում տեղի ունեցած տասնօրյակները, այդ տասնօրյակների ընթացքում ցուցադրված՝ գաղափարական բովանդակության խորությունն ու ամբողջականությունը, կենսուրախությունը, թատերական արվեստի հասունությունը—այս բոլորը ցույց են տալիս, թե սոցիալիստական հեղափոխությունը տաղանդների ինչպիսի հզոր աղբյուր ե



կյանքի կոչել, տաղանդներ, վորոնց առաջ, ինչպես մեծ Լենինն եր ասում, կապիտալիզմը «տրորում եր, ճնշում, խեղդում»:

Մոսկվայում, Կիևում և Խորհրդային Միության մյուս քաղաքներում խոշոր ձեռնարկություններում կազմակերպվում են ինքնուս նկարիչների կերպարվեստի ցուցահանդեսներ: Հազարավոր նկարներ, պորտրետներ, քանդակներ են ուղարկում աշխատավորներն այդ ցուցահանդեսներին: Նրանց թեմատիկան բազմակողմանի յե ու բազմազան: Ինքնուս նկարիչների ստեղծագործության մեջ հարուստ արտացոլում են գտնում Լենինի ու Ստալինի պատկերները:

Խորհրդային յերկիրը բացառիկ հոգատարություն ե ցուցաբերում իր օժտված զավակների ու դուստրերի նկատմամբ, և աշխարհում վոչ մի տեղ չկան այնպիսի պայմաններ տաղանդների բազմակողմանի զարգացման համար, ինչպես մեզ մոտ՝ ԽՍՀՄ-ում, ուստի և մեզ մոտ այդպես պայծառորեն ե ծաղկում խորհրդային արվեստը:

Այս վերջին քսան տարվա ընթացքում աճել են նոր մարդիկ—այդ խորհրդային քաղաքացիներն են:

Նոր, խորհրդային մարդու հատկությունները առավել լիակատար կերպով մարմնավորում են իրենց մեջ ստալինյան սաները—խորհրդային օդաչուները, մեր հայրենիքի հպարտ բազեները: Նրանց պանծալի, քաջարի սխրագործություններով հիացած է ամբողջ աշխարհը:

Խորհրդային մարդիկ նվաճեցին Հյուսիսային բևեռը: Բոլորովին վերջերս խորհրդային օդաչուները յերկու նշանակալից անվայրեջք թռիչք կատարեցին Մոսկվա—Հյուսիսային բևեռ—Հյուսիսային Ամերիկա մարշրուտով: Մեր օդաչուներից հեռու վոչ վոք չի թռչում, նրանցից բարձր վոչ վոք չի բարձրացել:

Հսկայական թվով ամենադժվարին անցումներ, ձիարշավներ, դեպի լեռների ամենաբարձր գագաթների վերելքներ են կատարում քաջարի, համարձակ, խորհրդային մարդիկ և ամեն տեղ ու ամենուրեք նրանք



իրենց առջև դնում են մեկ նպատակ—ամրապնդել իրենց ուժերը, խիզախությունը, ուժեղացնել սիրելի հայրենիքի հզորությունը:

* * *

Մեր հայրենիքը հսկայական խանդավառությամբ է դիմավորում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության քսանամյակը: Ամբողջ յերկրում բարձրանում է նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության նոր, հուժկու ալիքը: Յերկրի խոշորագույն արդյունաբերական կենտրոնների, գործարանների ու ֆաբրիկաների բանվորները, յերկաթուղայինները, կուլտուրայի ու արվեստի աշխատողները արժանավոր, ստախանովյան դիմավորում են պատրաստում Սոցիալիստական մեծ հեղափոխության քսաներորդ տարեդարձին: Ամբողջ խորհրդային ժողովուրդը ձգտում է այդ մեծ տոնն ու Գերագույն Խորհրդի առաջիկա ընտրությունները նշել նորանոր նվաճումներով: ԽՍՀՄ ժողովուրդները դեպի

ընտրությունները կլինեն կազմակերպված և իրենց ձայնը կտան ամենալավագույն, մինչև վերջը Լենին-Ստալինի կուսակցության գործին նվիրված մարդկանց:

Վոչ վոք, ֆաշիստական գործակալների—տրոցկիստների, բուխարինականների ու ֆաշիզմի այլ գործակալների անարգ, ժողովրդի կողմից յերիցս անիծյալ արյունարբու բանդայի վոչ մի թշնամական դավ ի վիճակի չե կանգնեցնելու ԽՍՀՄ մեծ ժողովուրդների հաղթական յերթը դեպի կոմունիզմը, ժողովուրդների, վորոնք համախմբված են բոլշևիկյան կուսակցության շուրջը, Լենինի գործի հանճարեղ շարունակող ընկեր Ստալինի շուրջը:

